АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

# АРМЯНСКАЯ КНИГА КАНОНОВ

I

Предисловие, научно-критический текст и примечания
ВАЗГЕНА АКОПЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1964

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԿԱՆՈՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ

## Ա

Աշխատասիրությամբ՝
ՎԱԶԳԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1964

«Կանոնագիրք Հայոց» պատմա-իրավաբանական նյութերի ժողովածուն, իրավամբ, հանդիսանում է հայ միջնադարյան բազմաբովանդակ մատենագրության խոշոր հուշարձաններից մեկը։ Այն կազմվել է VIII դարի առաջին քառորդում և բովանդակում է IV—VIII դարերի կանոնական որոշումները։ Վաղ ավատական Հայաստանի հասարակական ներքին կյանքը ուսումնասիրելու համար բացառիկ կարևոր նշանակություն ունի այս աշխատությունը։

Կանոնագիրքը հանդիսանում է խիստ կարևոր և ուշագրավ սկզբնաղբյուր պատմաբանների, իրավունքի, փիլիսոփայության և տնտեսագիտության պատմությամբ զբաղվողների, բանասերների, ազգագրագետների, լեզվաբանների համար։ Այն մեծ չափով կնպաստի վաղ միջնադարյան Հայաստանի սոցիալական, քաղաքական և իրավական հարցերի լուսաբանմանը։

Մի քանի տասնյակ ձեռագրերի բաղդատությամբ կազմված «Կանոնագիրք Հայոց»-ի գիտական-քննական բնագիրը լույս է տեսնում առաջին անգամ։

խմբագրությամբ՝
Հ. Ս. ԱՆԱՍՅԱՆԻ, ԷՄ. Ա. ՊԻՎԱԶՅԱՆԻ

Ուսուցչիս՝

ակադեմիկոս

ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆԻ

հիշատակին

# ՆԱԽԱԲԱՆ

*Ա. Հայ ժողովրդի բազմադարյան պատմության տարբեր ժամանակաշրջաններից մեզ հասել է մշակութային անգնահատելի ժառանգություն՝ պատմագրության, դրականության, փիլիսոփայության, գիտության տարբեր ճյուղերին վերաբերող թարգմանական ու ինքնուրույն երկեր, ճարտարապետության, արվեստի և այլ բնագավառների հոյակապ հուշարձաններ։*

*Միջնադարյան հայ մատենագրության մեջ պահպանվել են նաև ժամանակի հասարակական տարբեր շերտերի սոցիալական և իրավական հարաբերությունների արտացոլող խոշոր հուշարձաններ։ Այս հուշարձանները հանդիսանում են յուրատեսակ հայելիներ, ուր առմիշտ բյուրեղացվել են անցյալ կյանքի իրավանորմերը, որոնք միջոց էին կարգավորելու հասարակության համակեցությունը՝ հօգուտ տնտեսական ու քաղաքական իշխանություն ունեցող դասակարգի՝ «ազատ»-ների շահերի։ Այլ կերպ չէր էլ կարող լինել, որովհետև միջնադարում իրավունքը խարսխվում էր հողի ավատական սեփականության (հոգալին ունտա) և դասային արտոնությունների սկզբունքի վրա։ Դա մի սկզբունք էր, որը մեկընդմիշտ առկա էր դարձնում որոշակի մի պատմաշրջանում քարոզված արդարության բեկված նժարները։ Իսկ այդ սկզբունքի գաղափարական սրբագործումը պատկանում էր քրիստոնեական վարդապետությանը։ Այս առթիվ տեղին է հիշել Ֆ. Էնգելսի հայտնի ցուցումը, թե միջնադարում «Քաղաքականությունն ու իրավագիտությունը, ինչպես և մնացած բոլոր գիտությունները… աստվածաբանության հասարակ ճյուղեր դարձան և միևնույն սկզբունքներով ղեկավարվեցին, որոնք տիրում էին աստվածաբանության մեջ։ Եկեղեցու դոգմաները միաժամանակ և քաղաքական աքսիոմաներ էին, իսկ Աստվածաշնչի խոսքերն ամեն մի դատարանում օրենքի ուժ ունեին»[1]։*

*Միջնադարում հայ ժողովրդի գաղափարախոսության այս, ինչպես և մյուս բնագավառներում, առավելապես իշխում էին հայ եկեղեցու սկզբունքներն ու դոգմաները։*

*Համայնապարփակ այս գերիշխանությունը «հետևանք էր այն դիրքի, որ եկեղեցին գրավում էր՝ իբրև գոյություն ունեցող ֆեոդալական հասարակարգի*

---

[1] *Ֆ. Էնգելս, Գերմանական գյուղացիական պատերազմը, Երևան, 1934, էջ 47։ Հմմտ. նաև Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն, Երևան, 1933, էջ 19, Լյուդվիգ Ֆոյերբախ, Երևան, 1933, էջ 114,* К. Маркс и Ф. Энгельс, Сочинения, т. XVI, ч. I, Москва, 1937, стр. 295.

ընդհանուր ամփոփում և հավաստում»[1]։ Եվ ապա, եկեղեցին «իր սեփական նվիրապետությունը հաստատեց ֆեոդալական օրինակի համաձայն, և վերջ ի վերջո նա ամենախոշոր ֆեոդալական սեփականատերն էր»[2]։ Իսկ եկեղեցու այդ վիճակը բխում էր քրիստոնեության այն պաշտոնական կերպարանքից, որը տվել էր նրան «Նիկիայի վեհաժողովը, այն համարեցնելով պետական կրոնի կոչմանը»[3]։ Այսպիսով, հայ եկեղեցին ևս, որը թեև եղել է ավատական նվիրապետության ծնունդ, մի հայտնի չափով ավելի կենտրոնաձիգ բնույթ ուներ, քան հայ Արշակունի կամ Բագրատունի թագավորությունները։

Այս դիտողությունները, արդեն, խոսում են եկեղեցու, իբրև ավատական ուրույն կազմակերպության տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական և իրավական բացառիկ ուժի և դերի մասին, մասնավորապես հայ պետականության բացակայության երկար ու ձիգ պատմաշրջաններում։

Հայ եկեղեցին հենց սկզբից իրագործում էր «գործակալութեանն մեծի դատաւորութեանն»[4] պաշտոնը, այսինքն իր ձեռքում էր պահում օրենսդրական և դատավարական գործունեությունը[5]։ Եվ երբ հայ ժողովուրդը թագավորական կենտրոնական պետականությունը կորցրեց, եկեղեցու այս դերն ավելի ուժեղացավ, որովհետև հայ եկեղեցին կարողացավ պահել իր կենտրոնական սրբազան կազմակերպությունը, որը խարսխվում էր մի ժողովրդի դավանանքի սկզբունքի վրա։ Այդ երևույթը հնարավորություն տվեց եկեղեցուն, համեմատորեն, ավելի լայնորեն ըմբռնելու ժողովրդի համընդհանուր քաղաքական շահերը, քան ավատական առանձին տները։ Դա մի երևույթ էր, որ նկատում ենք մեր իրականության մեջ ողջ միջնադարում։

Բ. Մեզ հասած միջնադարյան հայ մատենագրական ժառանգության մեջ կան իրավաբանական այնպիսի խոշոր գործեր, ինչպես Մխիթար Գոշի և Սմբատ Գունդստաբլի դատաստանագրքերը[6], իսկ դրանցից առաջ և դրանց հանդես գալուց հետո՝ կանոնական բազմաթիվ որոշումներ և գրություններ, ինչպես

---

[1] Ֆ. Էնգելս, Գերմանական գյուղացիական պատերազմը, էջ 47։

[2] Ֆ. Էնգելս, Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն, էջ 78, Լյուդվիկ Ֆոյերբախ, էջ 114։

[3] Ֆ. Էնգելս, Լյուդվիգ Ֆոյերբախ, էջ 114։

[4] Փ. Բուզանդ, Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1889, էջ 36։

[5] Տես Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПб, 1908, стр. 447, Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 76, Խ. Սամուելյան, Հին հայ իրավունքի պատմություն, հա. 1, Երևան, 1939, էջ 44. С. Т. Еремян, Опыт периодизации истории Армении эпохи феодализма, „Вопросы истории", 1951, № 7, стр. 54.

[6] Այս շարքում չնշեցինք Դավիթ Ալավկա որդու աշխատությունը (որ 1953 թ. «Էջմիածին» ամսագրում հրատարակեց պրոֆ. Աշ. Աբրահամյանը՝ «Դավիթ Ալավկա որդու կանոնները» խորագրով, իսկ անգլերեն թարգմանությունը տես C, J. F. Dowsett, „The Penitential of David of Ganjak". Louvain, 1961, Vol. 3 and 4), որովհետև այն ոչ դատաստանագիրք է և ոչ էլ կանոնագիրք, այլ հանդիսանում է կանոնագրքից դատաստանագրքին անցնելու միջանկյալ օղակ, թեև պատկանում է հայ իրավունքի պատմության միջնադարյան հուշարձանների թվին։

Թյուրիմացաբար դատաստանագրքի հեղինակ է համարվել նաև Հովհաննես Սարկավագը։ Մատենադարանի դիտաշխատակից ընկ. Ա. Մնացականյանի միջոցով մեզ վաղուց էին հայտնի մեր Մատենադարանի №№ 228 (էջ 152ա), 814 (էջ 217բ), 849 (էջ 171ա) ձեռագրերում գտնվող հետևյալ վկայությունները. ա) «Որպէս եւ մեծ վարդապետն Հայոց Սարկաւագ ի դատաստանաց գիրսն յիշէ և ասէ. «Բազում ժամանակք զի ծնօղքն հարկանեն զզաւակքն՝ և ինքեանք մաղկատին, զնոսա ապտակեն՝ և ինքեանք մորմոքին, մանօանդ յորժամ տեսանեն յարտասուս հարեալ առաջի ծնօղացն, յայնժամ գալարին աղիքն»

օրինակ՝ Շահապիվանի (V դ.), Դվինի (VI, VII դդ.), Պարտավի (VIII դ.), ավելի ուշ շրջանում՝ Սսի (1243 թ.), Ջագավանի (1268 թ.), Երուսաղեմի (1651 թ.) ժողովների որոշումները, Գրիգոր Լուսավորչի, Սահակ Պարթևի, Հովհան Մանդակունու, Դավիթ Ալավկա որդու և այլոց կանոնական գրություն-ները։

---

ճմլին երիկամունքն և արտեանունքն արտասուս թորացուցաննեն։ Այսպէս և մարգարէքն Աստուած» (№ 228, էջ 152ա)։ № 228 ձեռագրի վկայությունը միակն է, ուր նշված է հեղինակի՝ Սարկավագի անունը, իսկ մնացած ձեռագրերում եղած վկայությունը համառոտ է և հիշատակություն չկա հեղինակի մասին. ահա այդ վկայությունը. բ) «Է և բաղում անգամ զի ծնօղն հարկանէ զզաւակն և ինքն մորմոքի, յորժամ տեսանէ յարաստուս հարեալ զաղայն գալարի[ն] աղիքն և արտասուս ծորացուցաննեն։ Այսպէս և մարգարէքն Աստուած...» (№ 814, էջ 217բ. տես նաև №№ 849, էջ 171ա, 2144, էջ 251ա, 6933, էջ 11բ և այլն)։

Այս վկայությունը գտնվում է Գրիգոր Տաթևացու Քարոզգրքի (Ձմրան հատոր) «Նորին հինգերորդ կիրակէին քարոզ՝ վասն մահու և կատարած աշխարհի» քարոզում։ Պրոֆ. Աշ. Աբրահամյանի օգտագործած № 6933 (էջ 11բ) ձեռագրի վկայությունը Գրիգոր Տաթևացու այդ քարոզի աղճատված և անհաջող տարբերակն է, ընդօրինակված 1812 թ.. Այս երկու վկայություններից, աղբյուրագիտական իմաստով, թե՞ որն է որին նախորդել՝ այստեղ մեզ չի հետաքրքրում։ Մեզ հետաքրքրում է միայն այն, թե Սարկավագը դատաստանագիրք կամ կանոնագիրք ունեցե՞լ է արդյոք։

Հենվելով վերոբերյալ վկայությունների վրա, պրոֆ. Աշ. Աբրահամյանը կարծում է թե «Հովհաննեսի անունով հայտնի եկեղեցական պատմությունը կարող է նրա կանոն-գիրքը լինել։ Պարզվում է մի ցավալի փաստ, որ Հովհաննեսն իրոք ունեցել է կանոնգիրք, բայց այն մեզ չի հասել» (ընդգծումը մերն է—Վ. Հ., տես Ա. Գ. Աբրահամյան, Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը, Երևան, 1956, էջ 40)։ Հաջորդ տողերում պրոֆ. Աշ. Աբրահամյանը դարձյալ գրում է. «Ցավալի է, որ Հովհաննեսի դատաստանագիրքը... կորած է» (ընդգծումը մերն է— Վ. Հ., նույն տեղում, էջ 40)։ Նախ՝ պրոֆ. Աշ. Աբրահամյանի համար պարզ չէ, թե Սարկավագն ինչ է ունեցել, կանոնագիրք, թե՞ դատաստանագիրք, որովհետև նա մի դեպքում գրում է կանոնգիրք մյուս դեպքում՝ դատաստանագիրք։ Ճիշտ է դրանք երկուսն էլ պատկանում են իրավագիտությանը, բայց տարբեր բաներ են։ Երկրորդ՝ վերևի ընդարձակ մեջբերումից նման եզրահանգումն առնվազն ըշտապողականության արդյունք է։ Այստեղ խոսքը վերաբերում է ոչ թե դատաստանագրքի («ի դատաստանաց գիրսն»), այլ դատաստանի (այս բառը Գ. Նոյմանը գործածում է Gerichtsbarkeit իրավասություն (դատարարություն) իմաստով) մասին գրված մի ուսումնասիրության, և կամ, որն ավելի հավանական է, նամակի, ճառի կամ քարոզի։ Տակավին տասնամյակներ առաջ հայագիտության և հայ իրավաբանական դրականության մեջ եղել է նման կարծիք. օրինակ, Գ. Նոյմանը, թվելով Սարկավագի գործերը, նշում է նաև «մի գիրք կամ ուսումնասիրություն իրավասության (դատարարության) վերաբերյալ, որից այժմ ոչինչ չի մնացել, բացի վերնագրից» („ein Buch oder Traktat über die Gerichtsbarkeit, wovon jetzt nichts weiter übrig ist, als der blosse Titel", G. F. Neumann, Versuch einer Geschichte der armenischen Literatur, Leipzig, 1836, s. 162). Իսկ Կոլեբը Սարկավագի ունեցածը համարում է «ճառ յաղագս իրաւաբանութեան» (տես Գոլեր, Իրաւունք Հայոց, թարգմ. Գ. Գալեմքարյան, Վիեննա, 1890, էջ 3)։ Եվ իսկապես, վերևի մեջբերումը ունի ոչ թե դատաստանագրքի կամ կանոնագրքի հոդվածի, այլ ճառի կամ խրատական գրության ոճ և բովանդակություն։ Երրորդ՝ եթե նման վկայություններից հանգենք պրոֆ. Աշ. Աբրահամյանի վերոհիշյալ եզրակացության, ապա պետք է ասենք, որ Վանական վարդապետն էլ իր հերթին կազմել է մի կանոնագիրք, որովհետև Գրիգոր Տաթևացին Եսայիի մարգարեության մեկնության մեջ գրում է. «...Շարականք և երգք վասն ժողովրդեան է, իսկ յորժամ ոչ մնան իբերաց՝ խառնափնդոր է և ոչ լսէ ժողովուրդն և ոչ օգտի։ Եւ այլ ես, զի Վանական վարդապետն ասէ ի կանոնական գիրս, թէ «Ոք յեկեղեցի զերգսն մինն բարձր ասէ և միւսն խոնարհ և ցած, եւ մինն յետ եւ մինն յառաջ՝ ընդ սատանայի եւ ընդ հերձուածողացն անէծս ընկալցի» (ընդգծումը մերն է—Վ. Հ., № 1237, էջ 22բ, տես նաև № 1128, էջ 16բ)։ Այստեղ խոսքը կանոնական—խրատական մի գրության կամ նամակի և կամ ճառի մասին է և ոչ կանոնագրքի։ Նույնը և վերաբերում է Սարկավագի կարծեցյալ կանոնագրքի

Հայ մատենագրության մեջ կանոն[1] բառով արտահայտված են այն որոշումները կամ գրությունները (շրջաբերականներ, նամակներ), որոնք շոշափել են տվյալ դեպքում ավատական հասարակության համակեցության ձևերը, հասարակության անդամների փոխհարաբերությունները, ապրելակերպը՝ երբեմն ընդհուպ խիստ անձնական վարվեցողության ձևերը, ժառանգության, քաղաքացիական, քրեական իրավունքի և իրավաբանական այլևայլ հարցեր։

Սկսած V դարից՝ հայ մատենագրության մեջ հանդես են գալիս ինչպես օտար՝ թարգմանական, այնպես էլ ազգային՝ ինքնուրույն կանոնական որոշումներ և այլ փաստաթղթեր (տիեզերական, տեղական և հայկական եկեղեցական ժողովների որոշումներ կամ հույն և հայ եկեղեցական նշանավոր գործիչների գրություններ), որոնք երկար ժամանակ գոյություն են ունեցել առանձին-առանձին, ցաքուցրիվ։

Գ. Հայ իրավաբանական մտքի պատմության մեջ,— այդ կարելի է հաստատ պնդել,—դարագլուխ է կազմում VIII դարի սկզբին Հովհաննես Օձնեցու՝ ժամանակի կրթված, եկեղեցական և քաղաքական խոշոր գործիչներից մեկի՝ կանոնական ցաքուցրիվ նյութերից ընտրությամբ հավաքած և կազմած ժողովածուն, որը հայտնի է Կանոնագիրք կամ Կանոնգիրք անունով։ Կանոնագիրքը կազմելու մասին ահա թե ինչ է գրում Հովհաննես Օձնեցին իր հիշատակարանում, որը, ինչպես կարելի է ենթադրել, եղել է Կանոնագրքին կից. «Լուսաշաւիղ ճանապարհ առ Աստուած՝ հնազանդութիւն ընդհանուր հաւատա-

մասին մեջբերված հատվածում ասվածին։ «Կանոնական գիրք», «կանոնական դիր» ասելով միջնադարում հասկացել են մի կողմից Կանոնագրքի մեջ մտած որևէ կանոնախումբ, մյուս կողմից ընդհանրապես կանոնական (խրատական) գրություն, նամակ, բայց ոչ կանոնագիրք մեր հասկացությամբ. օրինակ՝ Նպիփան Կիպրացու կանոնական մի գրությունը № 10137 կանոնագիրք ձեռագրի բովանդակության ցանկում մտել է «Կանոնական գիրք Նպիփանու ասացեալ գլուխ [Ե]» (էջ 1ա) խորագրով (նույն կանոնախումբը բուն ձեռագրում ունի «Կանոնական գիր տեառն Նպիփանու ասացեալ» (էջ 127բ) վերատառությունը)։ Նույնն է գրում նաև Հակոբ Շամախեցին Կանոնագրքի համար կազմած առարկայական ցանկի ներածականում. «Նմին իրի միեւնոյն ցանդ ոչ լինէր պիտանացու ամենից Կանոնականաց գրոց, այլ հարկ էր զի իւրաքանչիւր կանոնական գիրք զցանգ իւր ունիցէր ըստ շաւղի և ըստ որքանութեան իւրում» (№№ 3.81, էջ 103ա, 8444, էջ 399ա)։

[1] Հունարենի κανών բառին համապատասխան, հայերենում գտնում ենք երկու բառ՝ կանոն և քանոն: Կանոնը ունի մի քանի նշանակություն՝ ժամանակագրական աղյուսակ, կարգ, եղանակ, օրենք, սահմանադրություն, կարգապահություն (կարգ ու կանոն՝ կյանքի վարվեցողություն, ապրելակերպ. տես Աստվածաշնչում, Գաղ., Զ. 16, Փիլ., Գ. 16), եկեղեցական ժողովների որոշումներ, Սաղմոսի ութ բաժանումներից յուրաքանչյուրը, սահմանված շարականների կարգն այս կամ այն տոնի համար (տես «Նոր բառգիրք հայկազեան լեզուի», հա. Ա, Վենետիկ, 1836, էջ 1051, Ստ. Մալխասյանց, «Հայերէն բացատրական բառարան», հա. Բ, Երևան, 1944, էջ 385). իսկ քանոնը՝ տափակ և ուղիղ տախտակ փայտից կամ այլ նյութից, օրինակ ուղղության (տես «Նոր բառգիրք հայկազեան լեզուի», հտ. Բ, Վենետիկ, 1837, էջ 980, Ստ. Մալխասյանց, նույն տեղում, հա. Գ, Երևան, 1945, էջ 547)։

Միջնադարում այս երկու բառերը նույն իմաստով էլ գործածել են, օրինակ, № 2152 ձեռագրում (ժողովածու, 1402—1406 թթ. ընդօրինակություն) մի հարց ու պատասխանի մեջ կարդում ենք.

«Հ[արցումն]. Զի՞նչ է աւրէնք։

Պ[ատասխանի]. Սահման։

Հ[արցումն]. Զի՞նչ է սահման։

Պ[ատասխանի]. Կանոնք։

Հ[արցումն]. Զի՞նչ է կանոնք։

Պ[ատասխանի]. Որպէս արուեստաւորի լար և քանոն» (էջ 214ա)։

ցելոց *Քրիստոսի*։ Կազմեցին սուրբ հարքն զկանոնական բանից դիտաւորութիւն... Եւ վասն զի ոմանք առ ոմանս եւ ոչ ամենեքին առ ամենեսեան սոքա սերմանեալք, կամեցայ զբովանդակ զառ ի նոցանէն կանոնական սահմանեալ բան ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ ի հայրապետանոցի աստ ,արմատացուցանել»[1] *(ընդգծումը մերն է— Վ. Հ.)*։

Դժբախտաբար Հովհաննես Օձնեցու Կանոնագիրքը մեզ չի հասել անփոփոխ՝ իր սկզբնական վիճակով, և այժմ դժվար է վերականգնել նրա նախնական տեսքը, որովհետև Հովհաննես Օձնեցուց հետո, զանազան ժամանակներում և տարբեր անձնավորությունների կողմից, մեծ մասամբ անհայտ, Կանոնագիրք են մուծվել նրա մեջ սկզբում տեղ չգտած հնագույն՝ IV—VII դարերի կանոնախմբեր, կամ էլ նոր կանոնախմբեր, որոնք հանդես են եկել Կանոնագրքի կազմվելուց հետո։ Եվ այսպես, դարերի ընթացքում նորանոր կանոնական բնագրեր ընդունելով իր մեջ, երբեմն էլ կառուցվածքի փոփոխություն կրելով, Կանոնագիրքը մի քանի խմբագրությամբ մեզ է հասել 200-ից ավելի ձեռագիր ընդօրինակություններով։ Այսպիսով՝ Կանոնագրքի մեզ հասած ամբողջական և լրիվ ձեռագրերը բաղկացած են երկու շերտերից՝ որոնցից առաջինը Հովհաննես Օձնեցու կազմած ժողովածուն է, երկրորդը՝ նրանից հետո կատարված ավելացումները։

Կանոնագիրքը իրավաբանական փաստաթղթերի առաջին մեծ ժողովածուն է, հայկական „Corpus juris canonici“-ն։

Սակայն հայագիտական գրականության մեջ սխալ է բնորոշվել ու գնահատվել Հովհաննես Օձնեցու կազմած ժողովածուն՝ Կանոնագիրքը։ Վերջինս համարվել է կոդիֆիկացիա։ Պրոֆ. Խ. Սամուելյանը այդպես էլ գրում է. «Կանոնագիրքը... առաջին կոդիֆիկացիան է Հայաստանում»[2], կամ «Այդ կոդիֆիկացիան կատարվեց... Օհան Իմաստասեր Օձնեցու... ձեռքով»[3]։ Մինչդեռ, եթե հետևելու լինենք Հովհաննես Օձնեցու կազմած Կանոնագրքի վրա թափված աշխատանքի բնույթին, ապա անվարան կարող ենք ասել, որ նրա Կանոնագիրքը ոչ թե կոդիֆիկացիա է, այլ ինկորպորացիա։

Դ. Խեև կանոնական որոշումները, գրությունները (սրանցից համադրված կանոնագիրքը) և դատաստանագիրքը պատկանում են պատմա-իրավագիտական հուշարձանների թվին, սակայն դրանք իրենց բնույթով տարբերվում են միմյանցից մի հայտնի չափով։

Կանոնագրքի հոդվածները զգալի չափով վերաբերում են դավանանքի և պաշտամունքի ծիսական խնդիրներին, ամուսնության, ընտանիքի և այլ հարցերի վերաբերմամբ հասարակության անդամների, մասնավորապես եկեղեցական պաշտոնյաների, վարքագծին։ Այստեղ բնութագրվում են գործված մեղքը և կատարված հանցանքը կամ զանցանքը, արգելվում՝ զանազան գործողություններ։ Բացի Շահապիվանի ժողովի կանոնախմբից՝ մյուս կանոնախմբերը, որպես կանոն, արարքների համար մարմնական և նյութական պատիժներ չեն նախատեսում։ Եվ պատահական չէ, որ Ասողիկը Շահապիվանի ժողովի մասին խոսելիս ասում է, թե «ըստ տուգանօք կանոնսն կարգեցին»[4]։

[1] Տես ներքևում, էջ 535—536։

[2] Պրոֆ. Խ. Սամուելյան, Հին հայ իրավունքի պատմություն, հտ. 1, էջ 49։

[3] Նույն տեղում, էջ 48։

[4] Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 78։

Կանոնագրքում պատիժը գերազանցապես կապվում է ապաշխարության կրոնական գաղափարի հետ։ Խրատի, բարոյական դաստիարակման և կամ ապաշխարության միջոցով կանխել մարդկանց համակեցության կանոնների հնարավոր խախտումները։ Դրան հակառակ, դատաստանագրքում ապաշխարության մոմենտը նվազ նշանակություն ունի։ Այստեղ հանդես է գալիս քրեական պատասխանատվության և պատժի հարցը՝ այս բառերի արդի հասկացությամբ։

Կանոնագրքի տարբեր կանոնախմբերը հայ միջնադարյան ներքին կյանքի բազմապիսի կամ բոլոր կողմերի, օրինակ՝ տնտեսության, արտադրության կազմակերպման, հասարակական կառուցվածքի, տարբեր դասակարգերի իրավական գոյավիճակի, քաղաքացիական, քրեական իրավունքի, դատավարության և այլ հարցերի մասին ամբողջական և լրիվ տեղեկություններ չեն տալիս։ Դա կարելի է բացատրել նրանով, որ հայ եկեղեցական ժողովների և եկեղեցական գործիչների կանոնախմբերը կազմվել են յուրահատուկ իրադրության մեջ և որոշակի նպատակներով, նայած թե տվյալ ժամանակամիջոցում հասարակությանը ինչ հարցեր էին մտահոգում։ Այդ կանոնախմբերում արտահայտված են ոչ թե հայ հասարակության ներքին կյանքի բոլոր կողմերը, այլ միայն այն, թե ինչն է հուզել տվյալ պատմաշրջանում հայ հասարակության իշխող սոցիալական ուժերին։

Մեզ հետաքրքրող հարցերի մասին տեղեկություններ մենք քաղում ենք ոչ թե հասարակության տարբեր շերտերի համար սահմանված իրավական ամբողջական նորմերից, այլ նրանից, թե այդ շերտերը ինչ չպետք է կատարեն, մի բան, որն ավելի է նեղացնում այն ժամանակվա հայ հասարակության ներքին կյանքի ամբողջական մեր պատկերացման հնարավորությունները։ Այդ պատճառով էլ Կանոնագիրքը (այդ թվում նաև այն կանոնախմբերը, որոնք չեն մտել Կանոնագրքում) միջնադարյան հայ հասարակության ներսում «ազատ»-ների ձեռքին հանդիսացել է տվյալ ժամանակաշրջանում իրենց հուզող հարցերի լուծման ղեկավար լծակ, և ոչ թե հասարակության ներքին կյանքի բոլոր կողմերն արտահայտող մի ամբողջական օրենսդրական հուշարձան։ Կանոնագիրքն ամբողջական առումով չի արտացոլում քաղաքացիական, քրեական կամ դատավարական իրավունքը։ Ուստի հասկանալի է, թե ինչո՛ւ հայ միջնադարյան իրականության մի շարք կողմեր, ինչպես նշեցինք վերևում, մնացել են հետին պլանում։

Չնայած դրան, համենայն դեպս, հայ ավատատիրական հասարակության ներքին կյանքին վերաբերող բազմաթիվ հարցերի մասին շատ կարևոր և ուշագրավ տեղեկություններ մենք քաղում ենք Կանոնագրքի տված անուղղակի երբեմն էլ ուղղակի վկայություններից, մասամբ ապաշխարության, իսկ առանձին դեպքերում պատժի ձևերից և չափերից, սրանց նկատմամբ ունեցած դասակարգային անձուկ մոտեցումից և այլ կարգի վկայություններից։

Ե. Թե պատմական ինչպիսի՛ պայմաններում և ինչ նպատակով Հովհաննես Օձնեցին կազմեց Կանոնագիրքը, արժանի է հատուկ ուշադրության, որովհետև Կանոնագրքի հանդես գալը VIII դարի 10-ական թվականներին պատահական երևույթ չէր, այլ ժամանակի հասարակական ու քաղաքական խաչաձևումների և բախումների արդյունք՝ պատմական անհրաժեշտություն։ Այս

հանգամանքով է պայմանավորված Կանոնագրքի այն ժամանակվա քաղաքական նշանակությունը և պատմական արժեքը։

Բանն այն է, որ VII դարում Հայաստանի տերիտորիայում արաբների և բյուզանդացիների միջև պարբերաբար կրկնվող պատերազմներն ավերում էին երկիրը և քայքայում տնտեսությունը։ Հայ ժողովուրդը դեռ շունչ չառած, ականատես եղավ մի այլ արհավիրքի՝ արաբները VIII դարի սկզբներին, ոչնչացնելով հայ ազնվականության զգալի մասը, ձգտեցին թուլացնել հայ նախարարների զինված ուժը։ Եվ երբ արդեն այդ բանը ժամանակավորապես նրանց հաջողված էր, խալիֆաթը Հովհաննես Օձնեցու միջնորդությամբ նոր միայն ազատեց աքսորված նախարարների մի մասին, որը վերադարձավ հայրենիք և օտար իշխողների «ողորմածության» շնորհիվ ստացավ իր կորցրած վաղեմի հողերը և արտոնությունները։ Մինչդեռ աշխատավոր ժողովրդի վրա ընկած էին պատերազմական ավերածությունների հետևանքները և հարկային ծանր լուծը։

Հայաստանում ժամանակի քաղաքական վիճակը միայն դրանով չէր դիմագծվում։ Մինչև VIII դարի սկիզբը Հայաստանում աղմկոտ վեճեր գնացին բյուզանդական պաշտոնական դավանանքի՝ քաղկեդոնականության շուրջը, որը, ի դեպ ասենք, որոշ հաջողություն ունեցավ Հայաստանում։ Բյուզանդական կայսրությունն այլ ժողովուրդների դավանանքի նկատմամբ չուներ խալիֆաթի հանդուրժողականությունը։ Արաբական խալիֆաթի գերիշխանության տակ գտնվող ժողովուրդներն ազատ էին դավանանքի հպատակությունից։ Դրա փոխարեն նրանք պարտավորվում էին վճարել մի նոր հարկ՝ գլխահարկ։ Ըստ երևույթին, խալիֆաթն այդ քաղաքականությանը հետևում էր, որպեսզի իր մշտական արշավանքների համար ունենար դրամական տևական աղբյուր։ Երկրորդ, նվաճված և նվաճվող ժողովուրդների՝ հայերի և արաբների դավանանքները գաղափարական տարբեր ելակետներ ու աղբյուրներ ունեին։ Խալիֆաթը, կարծես, զգաստ էր նայում այդ խնդրին և չէր փորձում բռնությամբ պարտադրել իր դավանանքը ոչ-իսլամ ժողովուրդներին։ Մինչդեռ բյուզանդական կայսրությունը, ելնելով հայ և բյուզանդական պաշտոնական դավանանքների ընդհանրության իրողությունից, և հենվելով դրա վրա, ձգտում էր Հայաստանում թուլացնել արաբական գերիշխանությունը, հայերին քաղաքանապես միացնել իրեն, ապա միաձուլել և Հայաստանն ամբողջապես գրավել ու դարձնել կայսրության մի նահանգ։

Բյուզանդական կայսրության նվաճողական այդ քաղաքականությունը սկզբում իր հետ բերում էր վաղ-միջնադարյան Հայաստանի հասարակական ուժերի պառակտում և ապա՝ կլանում, որը թևաթափ անելով հայերին օտար իշխողների՝ թե՛ արաբների, և թե՛ բյուզանդացիների դեմ մղվող պայքարում, վերջ ի վերջո կհանգեցներ հայ ժողովրդի գոյության վերացմանը։

Ահա թե ինչու քաղկեդոնականության վեճերի քողի տակ ընթացող դավանաբանական պայքարի էությունը հանգում էր բյուզանդիայի քաղաքական ազդեցության ուժեղացմանը Հայաստանում։ Այդ է պատճառը, որ հայերի քաղաքական և նյութական զրկանքներ կրելու պայմաններում, Հովհաննես Օձնեցին ջանում էր նրանց անհողդողդ պահել հայ եկեղեցու հավատի մեջ և առժամանակ համակերպվել արաբական խալիֆաթի քաղաքականությանը։

Ավատական Հայաստանի հասարակական ուժերի պառակտման մասին արժեքավոր տեղեկություններ քաղում ենք 719 թվականին Դվինի ժողովում

*Հովհաննես Օձնեցու արտասանած ճառից, ուր ասված է. «Քանզի* տեսանեմ ի յոլովագոյն և ի ծանր իրս անկարգութիւն բազմացեալ, ոչ միայն ի ժողովրդականս, այլ առաւել յուխտի մանկունս և յառաջնորդս եկեղեցեաց: Որք մին լեզու՝ ի ձեռն միոյ քարոզի ի մի ելաք ճշմարտութեան ճանապարհ, և արդ բազմաճետք և բազմաշաւիղք եղաք, յանչափաբար և զանազան և այլաձևսն առնելոյ՝ թէ զվարս եւ եթէ զփառաբանութիւնսն որ *առ Աստուած։ Մինչ գրեթէ զնոյն կրել զվնասս ըստ հնոյ պատմութեանն՝ պատերազմել* մեզ այր ընդ եղբօր, և այր ընդ ընկերի, քաղաք ընդ քաղաքի և օրէնք ընդ օրէնս։ *Երկրական զբօսանօքն և վաճառացն տուրևառութեամբք խօսակիցք և հաշուակիցք իրերաց լինելով, և առ խազաղութեանն Աստուած ժողովեալք՝ ղիաղաղութիւնն խնդրել խուճապիմք և խռովիմք։ Եւ իբրև այլազգիք և այլալեզուք՝ տանիմք և բերեմք զմիմեանս, լինելով սա նմա խուժ, և այլք այլոց դուժ»*[1] *(ընդգծումը մերն է—Վ. Հ.)։*

*Այստեղ Հովհաննես Օձնեցուն հարկավ վշտացնում էին ոչ միայն հայ քաղկեդոնականների պառակտողական վարվելակերպը, այլև հայ եկեղեցու ներսում հանդես եկած աղանդները։ Մինչև Հովհաննես Օձնեցին հայ եկեղեցում ևս հանդես են եկել մեկից ավելի աղանդներ, որոնք չէին ընդունում այդ եկեղեցու պաշտոնական դոգմաները։ Այս աղանդները ոչ թե արիոսականների, նեստորականների և ուրիշ հերձվածողների նման հանդես էին գալիս Քրիստոսի բնույթի վերաբերյալ վեճերով, այլ փաստորեն ժխտում էին պաշտոնական եկեղեցու ամբողջ գոյության անհրաժեշտությունը։ Ֆ. Էնգելսի արտահայտությամբ՝ եթե վաղ շրջանի քրիստոնեությանը հարող ստորին խավերի՝ ստրուկների, ռազմագերիների, մանր գյուղացիների և աշխատավորական մյուս շերտերի համար «նրանց կորցրած ամբողջ դրախտն ընկած էր հետևում»*[2]*, ապա վաղ և զարգացած ավատատիրության ժամանակ աշխատավոր ժողովուրդը, ի դեմս աղանդների, պայքարում էր այդ դրախտը տեղափոխելու երկրի վրա, առօրյա ապրելակերպում ի հաշիվ ավատական նյութական տիրապետության։ Եվ որովհետև ինքը եկեղեցին ևս ավատական մի կազմակերպություն էր, որին պատկանում էր «յուրաքանչյուր երկրի ամբողջ հողային տարածությունների մոտավորապես մեկ երրորդը»*[3]*, այդ պատճառով էլ «ֆեոդալիզմի դեմ մղվող ամեն մի պայքար այն ժամանակ պետք է կրոնական զգեստավորում ընդուներ, ամենից առաջ եկեղեցու դեմ ուղղվեր»*[4]*։ Այստեղից, արդեն, հասկանալի են դառնում հայ եկեղեցու ամենադաժան միջոցառումներն ընդդեմ մծղնեականների, պավլիկյանների, իսկ ավելի ուշ՝ թոնդրակյանների։*

*Այս պայմաններում Հովհաննես Օձնեցու նպատակը և միջոցառումները գնում էին հայ ժողովրդի տարբեր շերտերի քաղաքական միության վերականգնման ուղղությամբ, պահպանելու և ամրացնելու հայ ժողովրդի ներքին կյանքի ինքնավարությունը պայքարելով նախ բյուզանդական ոտնձգություն-*

---

[1] *Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք, Վենետիկ, 1833, էջ 4—5։*

[2] К. Маркс и Ф. Энгельс, Сочинения, т. XVI, ч. II, էջ 422.

[3] *Նույն տեղում, հտ. XVI, մ. I, էջ 295. հմմտ. նաև Ֆ. Էնգելս, Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն, էջ 18։*

[4] *Ֆ. Էնգելս, Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն, էջ 19. հմմտ. նաև Գերմանական գյուղացիական պատերազմը, էջ 46։*

ների, աղանդավորական շարժումների դեմ և ապա, ուժեր կուտակելով, նախապատրաստել արաբների դեմ բարձրանալիք պայքարի նոր ալիքը։

Հենց այդ պայքարի շրջապտույտում է, որ Հովհաննես Օձնեցին մշակում է իր կանոնախումբը և կազմում Կանոնագիրքը, որպեսզի կարողանա միևնույն դավանանքի ներքո համախմբել հայերին, պահպանել նրանց և հայ եկեղեցու ինքնուրույնությունը և անկախությունը։ Վերջինս, անշուշտ, պետք է խարսխված լիներ ազգային ավանդությունների, սովորությունների վրա։ Ըստ երևույթին այդ նույն նպատակով և գրեթե միևնույն ժամանակ հանդես եկան «Գիրք թղթոց», որի կազմման աշխատանքները դարձյալ վերագրվում է Հովհաննես Օձնեցուն, և ճոխացված «Կնիք հաւատոյ» ժողովածուները։

Ազգային ավանդական կարգ ու կանոնով, սովորություններով իրականացնել հասարակական քաղաքական որոշակի նպատակներ, այս է Կանոնագրքի այն ժամանակվա քաղաքական և գործնական նշանակությունը, որը մի ցույց էր ընդդեմ քաղկեդոնականության մասնավորապես, և բյուզանդական կայսրության նվաճողական քաղաքականության՝ ընդհանրապես։ Այս միտքը կարմիր թելի նման անցնում է Օձնեցու կանոնախմբի Ը հոդվածում. «Արժան է դհացն անխմոր և զգինին անապակ հանել ի սուրբ սեղանն ըստ աւանդելոյ մեզ սրբոյն Գրիգորի և չխոնարհել յայլ ազգաց քրիստոնէից յաւանդութիւնս. զի սուրբ Լուսաւորիչն յաւրինականէն բերեալ զայս առաքելաբար հրաման ետ կատարել իւրոց վիճակելոցն, որպէս եւ զաղն աւրհնութեան յագապացն զենմունս խառնել եւ ըստ կարգի Ղեւտացւոցն ազգաւ սեպհականել զեկեղեցւոյ շնորհ. եւ մեզ ի նմին պարտ է յարամնալ եւ չթողուլ ի բաց, եւ չառնել նորաձեւս ինչ»[1]։ (Ընդգծումը մերն է— Վ. Հ.)։

Զ. Ի տարբերություն պատմագիտական սկզբնաղբյուրների, Կանոնագիրքը, թեև բովանդակում է եկեղեցական ժողովների որոշումներ և եկեղեցական ականավոր գործիչների կանոնական գրություններ. որոնք զգալի չափով, «վերաբերվում են կամ եկեղեցական դասին և կամ դավանանքի ու պաշտամունքի ծիսական խնդիրներին»[2], այնուհանդերձ խիստ ուշագրավ տեղեկություններ են տալիս մեզ լուսաբանելու «նախարարական Հայաստանի կամ սոցիալական իրավական հարաբերությունները և կամ ուրիշ կարևոր պրոբլեմներ»[3]։

Ճիշտ է, Կանոնագրքում զգալի չափով տեղ են գտել հայ եկեղեցու դավանանքի և պաշտամունքի ծիսական հարցերը, սակայն դրանք այն ժամանակ՝ միջնադարում ունեին իրենց բովանդակությունը և քաղաքական նշանակությունը, այն է՝ դավանանքի և պաշտամունքի ծիսական հարցերի մշակմամբ պահպանել հայ եկեղեցու ինքնուրույն՝ ազգային դեմքը, հեռու՝ ուրիշ եկեղեցիների, թեև քրիստոնյա, բայց օտար ազդեցություններից և գաղափարական միությունից, դրանով իսկ դիմակայել հայ ժողովրդի նկատմամբ համաձուլաբար քաղաքականություն վարող օտար ուժերի դեմ՝ հայ պետականության չգոյության պայմաններում։

---

[1] Տես ներքևում, էջ 519։

[2] Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 13, հմմտ. նույնի Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հտ. Բ, մասն Ա, էջ 428։

[3] Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 13, Քննական տեսություն... հտ. Բ, մասն Ա, էջ 428։

Է. Հայկական ծագում ունեցող կանոնական որոշումների մի մասը, որը տեղ է գտել Կանոնագրքում, եկեղեցական ժողովների սահմանումներ են։ Մեր իրականության մեջ այդ ժողովներին հոգևորականության հետ միասին, ինչպես վկայում են պատմական սկզբնաղբյուրները, մասնակցել են նաև հասարակության աշխարհիկ շերտերի ներկայացուցիչները՝ իշխանները։ «Ազատ»-ներն այդ ժողովներին տալիս էին օրենսդրական բարձրագույն իշխանության բնույթ՝ սահմանելով անհրաժեշտ որոշումներ իրենց դասակարգի տնտեսական և քաղաքական շահերից ելնելով. մինչդեռ հայագիտության մեջ հայ եկեղեցական ժողովներին իշխանների վաղուց ի վեր մասնակցությունը[1] բացատրվել է հայ եկեղեցու դեմոկրատիկ բնույթով։ Նման ժողովների հրավիրման նախաձեռնությունը պատկանում էր հայ եկեղեցուն, որովհետև եկեղեցին դեռ հնից, ինչպես նշեցինք վերևում, իր ձեռքում էր պահում օրենսդրական և դատավարական իրավունքը մի կողմից, և կենտրոնական պետական իշխանության բացակայության պայմաններում ինքն էր հանդես գալիս որպես կենտրոնական ու համազգային մի կազմակերպություն՝ մյուս կողմից։ Մասնավորապես վերջին հանգամանքի առկայության դեպքում եկեղեցական ժողովներում քննվում էին նաև հասարակության առաջ ծառացած այնպիսի հարցեր, որոնք վերաբերում էին ժողովրդի ներքին կյանքին, հասարակության տարբեր շերտերի սոցիալական և իրավական գոյավիճակին, առօրյա համակեցությանը։ Դրանով պետք է բացատրել նախ ավատական ազդեցիկ տների ներկայացուցիչների մասնակցությունն այդ ժողովներին և երկրորդ, թե ինչու Կանոնագիրքն իր ընդգրկումներով և կիրառության շառավիղներով դուրս եկավ դավանանքի ու հոգևորական դասի նեղ շրջանակից և մտավ հայ ժողովրդի ներքին կյանքի ամենախուլ անկյունները, շոշափեց նրա բոլոր դասակարգերի և շերտերի սոցիալական դրության շատ ու շատ կողմեր՝ արտահայտելով իշխող դասակարգի՝ «ազատ»-ների շահախնդրությունն ու տեսանկյունը։

Ը. Միջնադարում հայ ժողովրդի ստեղծած իրավագիտական հուշարձաններից միայն Կանոնագիրքն է, որ հանդես է գալիս, որոշ իմաստով, որպես դարերի ընթացքում ընդհանուր ճանաչում գտած իրավաբանական ակտերի պաշտոնական ժողովածու։ Ոչ Մխիթար Գոշի, ոչ Սմբատ Գունդստաբլի դատաստանագրքերը իրավաբանական պաշտոնական ակտեր չեն։ Դրանք իրենց ժամանակի մեծ մտածողների ստեղծագործություններ են, հարկավ ոչ մտացածին, ուր հեղինակների ընկալմամբ արտահայտված են ժամանակի սոցիալական և իրավական հարաբերությունների նորմաները։ Հակառակ դրան՝ Կանոնագիրքը ձևավորվեց հայոց հոգևոր պետի՝ կաթողիկոսի կողմից, կաթողիկոսարանում պաշտոնական միջավայրում և պաշտոնական անձի նախաձեռնությամբ։ Ինքը Հովհաննես Օձնեցին իր հիշատակարանում գրում է. «Կամեցայ զբովանդակ

---

[1] Այստեղ մենք նկատի ունենք եկեղեցական այն ժողովները, որոնք երկրի ներքին կյանքի վերաբերյալ ընդունել են կանոնական որոշումներ։ Իսկ այն ժողովները, որոնք հրավիրվել են երկրի քաղաքական կյանքի ճգնաժամային ռոպեներին, ինչպես վկայում են պատմական սկզբնաղբյուրները, բացի «ազատ»-ներից մասնակցել են նույնիսկ «անազատ»-ների ներկայացուցիչները, անենք, 449 թ. Արտաշատի ժողովը և այլն, այդ քայլին դիմել են այն դեպքերում, երբ սպառնացող վտանգը համարվել է համընդհանուր երևույթ՝ թե «ազատ»-ների և թե «անազատ»-ների համար։ Ողջ ժողովրդին ոտքի հանելու համար շատ հաճախ էլ այդ պայքարին տրվել է կրոնական երանգավորում։

զառ ի նոցանէն կանոնական սահմանել բան ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ ի հայրապետանոցի աստ արմատացուցանել»[1]։

Հեղինակն այս քայլին չդիմեց, հարկավ, հետաքրքրությունից դրդված և կամ ինքնաբավ նպատակով, այլ՝ գործնական նկատառումներով։ Որպես կաթողիկոս՝ նա ի մի բերելով ամբողջականացրեց իրենից առաջ սահմանված կանոնները, իր կողմից պաշտոնական ձև և վավերացում տվեց մինչև այդ էլ արդեն, ընդհանուր ճանաչում գտած կանոնական սահմանումներին։

Թ. Թե ինչ չափով են օգտագործվել միջնադարյան հայ հասարակական կյանքում Կանոնագրքում եղած այն կանոնախմբերը, որոնք ժամանակին հունարենից թարգմանվել են հայերենի և հետագայում մտել Կանոնագրքի մեջ (փոխառման հարցը), կարող է ուսումնասիրության հատուկ հարց դառնալ, որից հետո միայն հնարավոր կլինի այդ մասին որոշակի և հաստատուն բան ասել։ Այստեղ այդ խնդրով չենք զբաղվի։ Հայկական միջավայրում առաջ եկած մի քանի կանոնախմբերում արտահայտված որոշ հարցերի մասին կցանկանայինք առանձին դիտողություններ անել։ Կանոնագրքում ամենից ուշադրավ և հետաքրքիր կանոնախումբն է Շահապիվանի ժողովի որոշումները։ Կարելի է ասել՝ այս կանոնախումբը միակն է, որ հանցագործության համար սահմանում է պատիժներ և դրանով իսկ արդեն դուրս է գալիս կանոնական բնույթից և ստանում դատաստանագրքի նշանակություն։ Շահապիվանի ժողովն ընդունեց 20 հոդվածներ, որոնցից մեկը՝ ԺԻ, խրատական բնույթ ունի և պատիժ չի նախատեսում։ Հոդվածներից 6-ը ամբողջությամբ՝ Ա, Բ, ԺԴ, ԺԶ, ԺԷ և ԺԸ, ինչպես և Թ, ԺԴ, ԺԹ, Ի հոդվածները մասամբ, վերաբերում են հոգևորականներին, որոնց գործած կանոնական խախտումների և հանցանքների համար նախատեսված են կանոնական և քրեական պատիժներ՝ համապատասխան պատժաչափերով։ Մնացած 9 հոդվածները՝ Գ, Դ, Ե, Զ, Է, Ը, Ժ, ԺԱ, ԺԲ, ինչպես և Թ, ԺԳ, ԺԹ, Ի հոդվածները մասամբ, «ազատ»-ների՝ իշխանների և «շինական»-ների մասին են՝ զանազան պատժաչափերի նախատեսումով։ Այս վերջին խմբի Ը և ԺԱ հոդվածները, ինչպես նաև ԺԲ, ԺԳ, ԺԹ հոդվածների համապատասխան մասերը «ազատ»-ների և «շինական»-ների պատիժը նույնն են նախատեսում, թե՛ ըստ ձևի, թե՛ ըստ էության։ Է հոդվածում և Ե-ի մի մասում «ազատ»-ների և «շինական»-ների պատիժը թեև նույնն է, բայց պատժաչափը տարբեր է։ Գ, Դ, Զ, Ժ հոդվածները և Ե, Թ, ԺԲ հոդվածների մի մասը «ազատ»-ներին և «շինական»-ներին տարբեր ձևի և չափի պատիժներ են նախատեսում[2]։

Այս հոդվածների առնչությամբ անհրաժեշտ է նշել, որ «ազատ»-ների և «շինական»-ների համար նախատեսվում է երկու տեսակի պատիժ. «ազատ»-ների համար մի դեպքում ապաշխարություն և տուգանք, «շինական»-ների համար նույնը, ավելացրած նաև մարմնական պատիժ՝ ծեծ (հոդ. Գ, Դ, Թ և այլն), մի այլ դեպքում՝ երկուսի համար էլ գողենոց գնալ և տուգանք (հոդ. Դ, Ե և այլն), երրորդ դեպքում՝ «ազատ»-ներին խրատ և տուգանք, իսկ «շինական»-ներին ծեծ և խրատ (հոդ. Զ.), ընդորում «շինական»-ի տուգանքը բոլոր դեպքերում որպես կանոն կազմում է «ազատ»-ի տուգանքի կեսը կամ

[1] Տես ներքևում, էջ 536։

[2] Զ և Ժ հոդվածներում «ազատ»-ներին նախատեսում է պատիժ, իսկ «շինական»-ների անունը թեև չի տալիս, բայց բնագրից հասկացվում է, որ վերջիններիս համար ևս նախատեսված է պատիժ։

կեսից մի քիչ պակաս։ Բերում ենք այդ 5 հոդվածներից մեզ հետաքրքրող հատվածները.

1. Հոդ. Գ. «Եթէ ազատ է եւ զան չէ մարթ ճարկանել, ի տուգանն եւ յապաշխարութիւնն յաւելցեն Մ դրամ կարաւոելոց, Բ տարիս յապաշխարութիւն...։ Ապա եթէ շինական է, գան լոլով արրցէ, Ճ դրամ տուղան տացէ լեկեղեցի եւ յաղքատս բաշխեսեն եւ տարի մի ի պղծութենէն հեռացեալ՝ մտցէ յեկեղեցի... եթէ այր եւ եթէ կին կանոն այդ կացցէ»։
2. Հոդ. Ի. Եթե ամուսինը թողնում է կնոջը, ունեցվածքը հավասար բաժանում են, իսկ ամուսինը «Է ամ ապաշխարեսցէ եւ յեկեղեցի տուգան տացէ, յէ ազատ է՝ Ց դրամ, թէ շինական՝ գտնալի լիցի եւ Ճ դրամ յեկեղեցի տուգանեսցի...»։ Եթե պարզվի որ ամուսնալուծությունը եղել է մի այլ կնոջ պատճառով՝ «կալցին զկինն եւ յաւրկանոց տարի մի աղասցէ գողեացն։ Եթէ ազատ է (կինը— Վ. Հ.) եւ յաւրկանոց չերթայ՝ Ճ դրամ տացէ ի գողիսն»։
3. Հոդ. Ե. Ամլության դեպքում կնոջից բաժանվելիս, կնոջը անարգելու համար «թէ ազատ է՝ ՌՄ դրամ, եւ եթէ շինական՝ Ռ». մի տարվա ընթացքում, եթէ ամուսինը ամուսնանում է մի այլ կնոջ հետ, վերջինս որպես ամուսնալուծության պատճառ «տարի մի աղասցէ գողեացն եւ յաղախնութեան կացցէ եւ յեկեղեցին Ճ դրամ տուգան կալցին... Ապա եթէ ազատ է եւ ի գողենոց չերթայ՝ Ճ դրամ տուգան տացէ գողեացն»։
4. Հոդ. Ժ. «Ապա եթէ ազատ է եւ ի գողենոց չերթայ՝ Շ դրամ տացէ գողեացն եւ Բ ամ լիւրում եկեղեցւոջն յապաշխարութեան կացցէ»։
5. Հոդ. ԺԲ. Աղգապղծությունը եթե կնոջ կամքով է՝ «ղպատուհասն եւ զտուգանս եւ ղնղովս ղնոյն կրեսցէ... ապաշխարեսցէ Ի ամ ընդ ունկնդիրս, Գ ամս ընդ ձեռամբ, Ռ դրամ աղքատաց, Ծ՝ յեկեղեցի». այնուհետև «կալցին զկինն եւ յաւրկանոց տացեն, Ժ տարի աղասցէ գողեացն. ապա եթէ ազատ է եւ ի գողիսն չերթայ՝ Ց դրամ տացէ նոցա»։

Մեջբերման առաջին հատվածում արդեն շեշտվում է, որ «ազատ»-ին չի կարելի ծեծի ենթարկել, այդ պատճառով էլ մի կողմից նրան հասանելիք տուգանքը և ապաշխարությունը «յաւելցեն», մյուս կողմից՝ մնացած հոդվածներում «ազատ»-ների համար չեն նախատեսվում մարմնական պատիժներ. դրա փոխարեն նա տուգանքը վճարելով հանդերձ պետք է գնա նաև գողենոց։ Հոդվածներում կրկնվող «ապա եթէ ազատ է եւ ի գողենոց չերթայ» արտահայտությունը մեր կարծիքով ակնարկում է «ազատ»-ի սոցիալական այն արտոնությունը, թե նա իրավունք ունի գողենոց գնալը իր ընտրությամբ փոխարինելու տուգանք վճարելով, ինչքան սահմանված է օրենքով։ Օրինակ, 3-րդ հատվածում (հոդ. Ե, նույնը և Ի հոդվածում) նախատեսված է «տարի մի աղասցէ գողեացն եւ յաղախնութեան կացցէ եւ յեկեղեցին Ճ դրամ տուգան կալցին...»։ Այս որոշումը վերաբերում է և՛ «ազատ», և՛ «շինական» կնոջը հավասարապես։ Շարունակության մեջ բացատրում է՝ «Ապա եթէ ազատ է եւ ի գողենոց չերթայ՝ Ճ դրամ տուգան տացէ գողեացն». այսինքն, եկեղեցուն 100 դրամ տուգանք տալուց բացի, «ազատ»-ը իր գողենոց գնալը, նախընտրելու դեպքում, փոխարինում է 100 դրամ գողենոցին տուգանք վճարելու

պարտավորությամբ։ Ուրեմն միևնույն հանցանքի համար «շինական»-ը մեկ տարի մնում է գողենոցում և 100 դրամ տուգանք վճարում եկեղեցուն, իսկ «ազատ»-ը միայն 100-ական դրամ տուգանք է վճարում եկեղեցուն և գողենոցին (100 + 100 = 200)։ Այսպիսով, «ազատ»-ի և «շինական»-ի սոցիալ-իրավական վիճակի տարբերությունը կայանում է նրանում, որ «շինական»-ը կրելու է նախատեսված երկու պատիժը՝ գողենոց գնալ և տուգանք, իսկ «ազատ»-ին թեև նախատեսված է դարձյալ երկու պատիժ՝ գողենոց գնալ և տուգանք, բայց նա որպես արտոնյալ դասակարգի ներկայացուցիչ, առաջին պատիժը՝ գողենոց գնալը, նախօրոք սահմանված չափի տուգանքով փոխարինելու իրավունք ունի, եթե ինքը ցանկանում է, մի բան, որը «շինական»-ին արգելված է։ Այլ խոսքով «ազատ»-ի համար նախատեսված առաջին պատիժը ընտրովի (ալտերնատիվ) է, այսինքն՝ կախված է «ազատ»-ի կամքից։ «Ազատ»-ի իրավական այս վիճակը արտահայտված ենք գտնում տակավին IV դարի հեղինակ Եփրեմ Խուրի Ասորու կանոնական մի գրության մեջ, որը հայերեն թարգմանվել է V դարում, իսկ հետագայում՝ Հովհաննես Օձնեցուց հետո, մուծվել Կանոնագրքում։ Բերում ենք այդ կանոնախմբի Բ հոդվածն ամբողջությամբ. «Որք ճաշակեցին ի մռացութենէ ի մսոյ ի չորեքշաբաթու կամ յուրբաթու՝ որոշեսցին յեկեղեցւոյ՝ Գ շաբաթ պահելով սրբութեամբ եւ տրտուք տնանկաց եւ պատարագաւք, Ժ կրկին գան արբցէ և ապա հաղորդեսցի. իսկ եթէ ամբարտաւանութեամբ կամ արհամարհելով ղառաքելական հրամանն՝ Ի ամ ապաշխարեսցեն, Ժ կրկին գան արբցեն եւ Լ դրամ տուգանս տացեն յեկեղեցին. եւ յաւուրն յորում պղծեցաւ՝ զնա սրբութեամբ պահեսցէ մինչեւ ցմահ իւր եւ ապա հաղորդեսցի աւրինաց։ Ապա եթէ ազատ ոք է եւ ոչ առնու յանձն զապաշխարութիւնն եւ զկարգն՝ Մ դրամ տուգանս տացէ յեկեղեցին եւ Լ դրամ՝ յաղքատս եւ ապա հաղորդեսցի աւրինաց»։ (Ընդգծումը մերն է — Վ. Հ.)։ Այստեղ կարևոր է նշել երկու հանգամանք. նախ՝ կանոնական այս որոշումը կամ այն ժամանակ հայերի միջավայրում եղած նման մի այլ որոշում հավանաբար օրինակ է հանդիսացել Շահապիվանի ժողովի որոշումների իրավաբանական ձևակերպումների համար, իսկ այդ անցումը ասորերենի թե հայերենի միջոցով է եղել, միևնույնն է և էական նշանակություն չունի։ Զմոռանանք նշել, որ մինչև V դարը և դրանից հետո էլ որոշ ժամանակ հայերի շփումը ասորական մշակույթի հետ սերտ էր։ Երկրորդ՝ ընդգծված վերջին հատվածից շատ պարզ երևում է, որ «ազատ»-ի ցանկությամբ միայն պատիժը դառնում է ընտրովի։ Շահապիվանի ժողովի որոշումներում մի քանի անգամ հանդիպող «Ապա եթէ ազատ է եւ ի գողենոց չերթայ» արտահայտությունը, մեր կարծիքով, Եփրեմ Ասորու վերևում նշված վերջին հատվածի կամ նման մի այլ որոշման համառոտ շարադրումն է և դրա տակ ևս պետք է հասկանալ «ազատ»-ներին պատժի ձևերի ընտրությունը թույլատրելու մի միջոց։

Ժ. Համենայն դեպս Շահապիվանի ժողովի որոշումներում պարզ երևում է դասակարգային մոտեցումը «ազատ»-ների և «շինական»-ների նկատմամբ։ «Շինական»-ը դասվելով «անազատ»-ների շարքը, տակավին չէր կորցրել անձնական ազատության իրավունքները, ինչպես ճիշտ նկատել է ակադ. Հ. Մանանդյանը. «անազատ» արտահայտությունը լոկ նշան էր հարկատվության, որից ազատված էին ազնվականությունը, եկեղեցին։ Եվ «ազատ»-ների դասին «շինականների» չպատկանելը՝ դեռևս ապացույց չէ նրանց ճորտական վիճա-

կի»[1]։ «Շինական»-ները «անազատ»-ներ են անվանվել, իբրև «ազատ»-ներից տարբեր ու «ազատ»-ներին հակադիր դաս»[2]։ «Շինական»-ներն ունեցել են ոչ միայն սեփականություն՝ հող, անշարժ և շարժական գույք, այլև այդ գույքը տնօրինելու իրավունք։ Ավելին, «շինական»-ը թեև եղել է ոչ «ազատ», հարկատու և ավատական հասարակության նվիրապետության ստորին աստիճանի ամենաբազմաքանակ դասակարգը. այնուամենայնիվ նա իր անձնական իրավունքի տերն էր և օրենքի առաջ ներկայանում էր որպես ինքնուրույն քաղաքացի՝ իր անունից։ Շահապիվանի ժողովի առանձին հոդվածներում միևնույն հանցանքի համար և՛ «ազատ»-ին և՛ «շինական»-ին նախատեսվում է միևնույն պատիժը. տես Ե, Է, Ը, ԺԲ, ԺԴ հոդվածները. օրինակ՝ «Եթէ ազատ եւ եթէ շինական՝ կանոն այդ կացցէ» (հոդ. Է), «Եթէ յազատաց կամ ի շինականաց առաքելական կանոնին ընդդիմանան եւ կին դնեն՝ նզովեալ լիցին...» (հոդ. ԺԱ), «Թէ ազատ է, թէ շինական, տուրէնք եւ կանոնք այդ կացցեն» (հոդ. ԺԴ)։ Մի քանի այլ հոդվածներում թեև այդպես պարզ չի նշվում, բայց բնագրից նույնն է երևում (հոդ. Բ, ԺԹ և այլն)։ Պատժաչափը լինում է ըստ հանցանքի։ Տուգանքի չափի տարբերությունը բխում է սոցիալական այդ երկու դասակարգերի տնտեսական վիճակից, թերևս բարոյական ինչ որ նորմաներից։ Այս բոլորը խոսում են այն մասին, որ «շինական»-ը իրավազուրկ անձ չի եղել[3], ինչպես ավելի ուշ շրջանում ճորտերը, թեև ունեցել է տնտեսական կախում «ազատ»-ներից և ենթակա է եղել սրանց տնտեսական ճնշմանը։ Եվ երբ այս տեսանկյունով նայում ենք 645 թ. Դվինի ժողովի Թ հոդվածի ակայ. Հ. Մանանդյանի բացատրությանը, որի համաձայն իբր թե երդումարդը եղել է «բաժանման առարկա, ուստի և հավանական է ենթադրել, որ նույն այդ գույքը կարելի է եղել նաև գնել, վաճառել, ընծայել, կտակել և այլն»[4], ապա նկատում ենք, որ դա հավաստի չէ։ Այդ մասին Ս. Հակոբյանի բացատրությունը ավելի ճիշտ է, այսինքն՝ երդումարդի բաժանում ասելով «մենք պետք է հասկանանք ոչ թե ազատներին պատկանող գյուղացի-շինականները կամ իրավապես ճորտ գյուղացիները, այլ նրանց հարկատուները»[5]։

ԺԱ. Հետաքրքիր է մի այլ երևույթ։ Շահապիվանի ժողովի որոշումներում բոլոր տեսակի տուգանքները գնում են ոչ թե անհատներին՝ իշխաններին, այլ հիմնարկներին՝ եկեղեցուն կամ գոդենոցներին, որպես նրանց եկամտի մասնակի աղբյուր, իսկ առանձին դեպքերում էլ տուգանքի որոշ մասը նախատեսվում է բաշխել աղքատներին, թեև այլ հարց է, թե վերջինս ինչ չափով է իրականացվել։ Այս երևույթը նույնպես խոսում է այն մասին, որ «շինական»-ները անձնապես կախված չեն եղել իշխաններից, այլապես տուգանքը կվճարեին նրանց և ոչ թե հիմնարկներին։ Սակայն, տուգանքների դրամական ձևը միշտ չի նշանակել. թե վճարումները եղել են դրամով. շատ

---

[1] Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 129. 161. տես նաև Ս. Ե. Հակոբյան, Հայ գյուղացիության պատմություն, հտ. 1, Երևան, 1957, էջ 281։

[2] Հ. Մանանդյան, նույն տեղում. էջ 189։

[3] Հմմտ. Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 182։

[4] Նույն տեղում, էջ 162։

[5] Ս. Հակոբյան. Հայ գյուղացիության պատմություն, հտ. 1, էջ 281։

հնարավոր է, որ դա եղել է դրամական արտահայտության ձևով[1]։ Մենք նշեցինք, որ Կանոնագրքում երևում է «ազատ»-ների և «անազատ»-ների իրավական գոլավիճակի տարբերությունը, սակայն, անհրաժեշտ է նշել նաև այն, որ եկեղեցին օրինականացնում էր գոյություն ունեցող գույքային անհավասարությունը։ Տակավին Սահակ Պարթևի կանոնախմբի ԾԲ հոդվածում նշվում է, թե եկեղեցուն ինչ կարելի է նվիրել. «Իշխանք զգեւզս եւ զդաստակերտս եւ զգանձս ոսկւոյ եւ արծաթոյ, այլք յանդաստանաց եւ ի պաճարաց եւ ի հանդերձից պատուականաց...»։ Այլ հոդվածներում՝ Խ, ԽԱ, ԽԳ՝ Սահակ Պարթևը հանձնարարում է, թե մյուս նվերներն ինչպես պիտի բաժանել։ Այս (և ոչ միայն այս) ձևով եկեղեցին կուտակել էր հողային և այլ կարգի հսկայական սեփականություն և դրա հետ մեկտեղ եկեղեցին ազատ էր հարկատվությունից։ Այդ մասին Դվինի 645 թ. ժողովի Ն հոդվածում կարդում ենք. «Վասն շնորհի և ժառանգաւորութեան սահմանեցաք թէ ի սկզբանէ, որպէս ի հրամանէ սրբոյն Գրիգորի լեալ, նոյնպէս եղիցի. որոյ շատ է ժառանգութիւնն՝ դշատն կերիցէ, որոյ սակաւ՝ զսակաւն կալցի, եւ մի ըստ ծխոց բաժանեսցեն զշնորհն, զի ժառանգութիւն սրբոյ եկեղեցւոյ իբրեւ զազատութիւն է, զոր երանելւոյն սրբոյն Գրիգորի եւ թագաւորին Տրդատայ զատացեալ են՝ Արդ՝ դիւրաքանչիւր հարանց զժառանդութիւն կալցին եւ սրբոյ եկեղեցւոյ պաշտամանն հպատակ կացցեն»։ Այս հոդվածի անհրաժեշտությունը պայմանավորված էր նրանով, որ եկեղեցու իրավունքների դեմ տևական պայքար էին մղում ոչ միայն աշխատավորները, երբեմն զանազան աղանդների անվան տակ, այլև ավելի պահին նաև իշխանները, որոնք հոգևորականներին «ջանան ի ծառայութիւն եւ ի ստրկութիւն արկանել... զի երանելւոյն Գրիգորի եւ սրբոյն Տրդատայ դուռբ եկեղեցւոյ մանկունս ընդ ազատաց տոհմին են կարգեալ, եւ ազատ էին սրբոյ եկեղեցւոյ հող եւ ջուր, նաեւ ի Պարսից իսկ տէրութեանն յայտ արարեալ եւ չէ խառնեալ ի շինական իշխանութեամբ» (Դվին, հոդ. Թ)։

ԺԲ. Սահակ Պարթևի կանոնախումբը ուշագրավ է և հետաքրքիր V դարի առաջին կեսում երկրի ընդհանուր վիճակը հասկանալու համար։ Դպրոցների կազմակերպման նրա ջանքերը մեկ նպատակ ունեին՝ կադրեր պատրաստել եկեղեցու համար (հոդ. Ժ)։ Սակայն, խիստ ուշագրավ է ամուսնության ազատ ընտրության կամ ազատ սիրո գաղափարը տակավին այն ժամանակ՝ V դարում։ Հայաստանը թեև գտնվում էր Արևելքի ժողովուրդների միջավայրում, սակայն, հայերի մոտ կինն այն ժամանակ, հակառակ Արևելքի սովորության դարձած արհամարհանքին, համեմատաբար բարձր արժանապատվություն ուներ, քան հետագայում և ուշ միջնադարում։ Հենց այն հանգամանքը, որ Շահապիվանի ժողովի որոշումներում կինն օրենքի առաջ հավասար էր տղամարդուն, ցույց է տալիս կնոջ այդ արժանապատվությունը. «Եթէ այր եւ եթէ կին՝ կանոն այդ կացցէ» (հոդ. Գ), «առն եւ կնոջ պատուհաս, տուգան եւ ապաշխարութիւն՝ կանոն եւ սահման այդ կացցէ» (հոդ. Ե), «Եթէ այր եւ եթէ կին երթեալ իցեն ի հարցուկս՝ կանոն այդ լիցի» (հոդ. Թ) և այլն։ Իսկ Սահակ Պարթևը իր ԻԷ հոդվածում արգելում է ամուսնությունը, եթե ամուսնացողները միմյանց չեն տեսել և հավանել. «Պատուէր արարէք նոցա... մի

[1] Հմմտ. Թ. Ավդալբեկյանի հոդվածը «Հայ շինականի ու դեղջկուհու աշխատավարձը հինգերորդ դարում» (Տեղեկագիր Հ.Ս.Խ.Հ. Գիտության և Արվեստի ինստիտուտի, № 3, Երևան, 1928, էջ 51—81)։

կատարելոցն՝ առանց գիրեարս տեսանելոյ միմեանց հաճութեամբ. եւ դուք քահանայք... կատարելոցն որոց զմիմեանս ոչ իցէ տեսեալ ի հաճոյս ինքեան, պսակ մի իշխէք դնել առանց քննութեան եւ ցնոսին ինքեանս հարցանելոյ»։ Ավելին՝ եթե ծնողներն ինչ-ինչ պատճառներով այս հարցում խաբում են քահանաներին և անտեսում իրենց զավակների ցանկությունը և վերջիններս ակամա են համաձայնություն տվել ամուսնության, այդպիսիների ծնողները ենթակա են կանոնական պատժի։ Իհարկե՝ այլ հարց է, թե այդ գաղափարը կյանքում ինչ չափով է իրականացվել, սակայն նման գաղափարն ինքնին ուշագրավ է։ Հայերի մոտ կնոջ այս վիճակը թերևս կարելի է բացատրել նրանց տևական և անընդմիջական շփումով հույների և անտիկ մշակույթի հետ, որ կինը չէր գտնվում ստորացման այն աստիճանում, ինչ տեսնում ենք հայերին շրջապատող Արևելքի մի շարք ժողովուրդների մոտ։

Համառոտակի նշեցինք հայ հին կյանքում տեղի ունեցած և Կանոնագրքում արտահայտված մի քանի հարցերը միայն։ Մոտիկին հետևելով Կանոնագրքում եղած կանոնական պատիժներին, պարզվում է, որ դրանք հիմնականում վերաբերում են հինգ հարցերի.

1. Անձնական իրավունքին, 2. Ընչական (սեփականության) իրավունքին, 3. Մասնավորապես եկեղեցական պաշտոններին, 4. Ծիսական հարցերին, 5. Լայն ըմբռնմամբ հավատուրացությանը։ Վերջին կետի կապակցությամբ նշելի է, որ, հայ ժողովրդի պետականության բացակայության պայմաններում, պետական դավաճանության մասին Կանոնագրքում չէր կարող խոսք լինել։ Դրան հակառակ, մեծ տեղ է բռնում հավատուրացության հարցը, կապված ինչպես հայ եկեղեցու գաղափարական խորթ ուսմունքների՝ աղանդների դեմ տարվող պայքարի, այնպես էլ օտար նվաճողների հոգևոր ճնշման հետ։

ԺԳ. Սակայն, Կանոնագիրքը մեզ հետաքրքրում է ոչ միայն վերևում մասնակիորեն նշված և ընդհանրապես չնշված իրավական այլ հարցերի տեսակետից, այլև լեզվական առումով։ Կանոնագրքում կան բառեր, որոնք հին են, բայց երբեմն գործածված են մեզ համար նոր իմաստով, օրինակ, Անկյուրիայի ժողովի Ա հոդվածում կարդում ենք. «այլ ի թարգմանութեան ննտելյ»[1]։ Ընդգծված բառը հանդիպում ենք նաև Լավոդիկեի ժողովի ԽԹ հոդվածում. «Արժան է ուրոյն յետ թարգմանութեանն առնելոյ եպիսկոպոսացն նախ...»[2]։ Հունարենում համապատասխանաբար կարդում ենք. «προσφέρειν δὲ αὐτοὺς ἢ ὁμιλεῖν» և «περὶ τοῦ δεῖν ἰδία πρῶτον μετὰ τὰς ὁμιλίας τῶν ἐπισκόπων....»։ «Թարգմանություն» բառը սովորական իմաստով այս հոդվածների միտքը չի բացահայտում։ Հին, մասնավորապես բյուզանդական շրջանում հունարեն ἡ ὁμιλία բառն այլ իմաստների հետ ունի նաև զրույցի, քարոզի՝ բեմասացության նշանակություն[3], մինչդեռ հայերենում՝ «թարգմանություն» բառը երկար ժամանակ այդ իմաստով չի հասկացվել։ Բերված հատվածներում «թարգմանութիւն» բառը նշանակում է զրոյց, քարոզ, երբ սուրբ գրքի

---

[1] Տես Ներքևում, էջ 131։

[2] Տես Ներքևում, էջ 233։

[3] Տես Древнегреческо-русский словарь, составил И. Х. Дворецкий, т. II, М. 1958, էջ 1170, E. A. Sophocles, Greek Lexicon of the Roman and Byzantine Periods from B. C. 146 to A. D. 1100, հտ. II, New York, էջ 804, Δ. Δημητράκου, Μέγα λεξικὸν τῆς ἑλληνικῆς γλώσσης, τ. 6 Ἀθῆναι, 1951, էջ 5118—5119։ Հեփելեն ὁμιλεῖν բառը Անկյուրիայի ժողովի Ա

հնգամատյանից վերցնում էին մեկ տուն, իսկ մնացածներից՝ մարգարեներից, ավետարանիչներից, առաքյալներից և այլն, մինչև երեք տուն, բացատրում այն և դրա շուրջը զրուցում։ Ուրեմն, հնում, «թարգմանութիւն» ասելով հասկացել են նաև զրույց, քարոզ: Եվ այս փոքրիկ ճշտումը հնարավորություն է տալիս ուշադրավ և անսպասելի եզրահանգումների[1]։

ժԴ. «Rheinischer Beobachter թերթի կոմունիզմը» հոդվածում Մարքսը, խոսելով քրիստոնեության սկզբունքների մասին, գրում է. «Քրիստոնեության սոցիալական սկզբունքներն արդարացնում էին անտիկ ստրկությունը»[2]։ Քրիստոնեության պատմական զարգացումը ցույց տվեց, որ նրա սոցիալական սկզբունքները նույնքան հաջողությամբ արդարացնում էին միջնադարյան ճորտությունը և առհասարակ դասակարգային հասարակությունը։ Եվ քանի որ Կանոնագրքի գաղափարական սկզբունքները խարսխվում են քրիստոնեության, մասնավորապես հայ եկեղեցու դավանական դրույթների վրա, ապա ուրեմն և Կանոնագիրքը կոչված էր արդարացնելու ավատական հասարակության սոցիալական անհավասարությունը, իշխող դասակարգի՝ «ազատ»-ների տիրական, և շահագործվող դասակարգի՝ «անազատ»-ների ենթարկյալ տնտեսական ու իրավական գոյավիճակը, պահպանելու և ամրացնելու հայ եկեղեցու դավանաբանական և ծիսական դրույթները։ Այդ դրույթների պահպանման և ամրապնդման համար Կանոնագիրքը պայքար էր մղում ավատական հասարակության և հայ եկեղեցու սկզբունքներին խորթ երևույթների դեմ, որոնք հանդես էին գալիս այն ժամանակվա հայ հասարակության մեջ և պայմանավորված էին այդ հասարակության զարգացման ներքին օրինաչափությամբ։

Կանոնագիրքը պարունակում է հայ ժողովրդի (և ոչ միայն հայ ժողովրդի) կենցաղում, հավատալիքներում որպես մնացորդներ տակավին պահված նախաքրիստոնեական՝ հեթանոսական շրջանի ապրելակերպի, պատկերացումների, ընտանեկան հարաբերությունների վերաբերյալ բազմաթիվ նյութեր։ Հայ եկեղեցին ժողովրդի ընդերքում պահված հեթանոսական շրջանի մնացուկները դիտում էր որպես պարարտ հող զանազան աղանդների գաղափարական սնուցման համար։ Այդ մնացորդների դեմ էլ ուղղված էին Կանոնագրքում տեղ գտած համապատասխան սահմանումները։ Ավատական հասարակության գաղափարախոսներին անհրաժեշտ էր համապատասխան սահմանումներ տալ հասարակության անդամների վարվելակերպի, ընտանեկան հարաբերությունների և այլ հարցերի մասին։ Տարբեր մարզերում հեթանոսական շրջանի ապրելակերպի նստվածք տված մնացորդները հայ եկեղեցին

հոդվածի գերմաներեն բնագրում թարգմանել է predigen (քարոզել). տես Conciliengeschichte, Erster Band, Freiburg im Breisgau, 1855, S. 191, համտ. նաև էջ 738։ Սարդիկեի ժողովի ԺԱ հոդվածում հենց ըմաստացությւն իմաստով էլ գործածվում է. «եւ յաճախագոյն ի բեմէ խաւսեսցի» (էջ 264). համտ. հուն.-ը xαὶ συνεχέστερον ὁμιλῇ։ Մեզ թվում է, որ հայ եկեղեցում ընդունված Թարգմանչաց տոնը, որը նշվում է ամեն տարի հուլիսի առաջին շաբաթվա հինգշաբթի և հոկտեմբերի երկրորդ շաբաթվա շաբաթ օրը, պետք է հասկանալ ոչ թե թարգմանիչների պատվին նվիրված տոն, այլ քարոզիչների, այսինքն հայ եկեղեցու պաշտամունքը՝ ըմաստացությունը հայեր են դարձնողների։

[1] Տես Լմ. Ա. Գիմաղյանի «Մովսես Խորենացու պատմության մի կարևոր հատվածի թարգմանության մասին» հոդվածը (Պատմա-բանասիրական հանդես, 1963, № 2, էջ 266—268)։

[2] К. Маркс и Ф. Энгельс. Сочинение, т. IV, Москва, 1955, стр. 204.

համարում էր անբարոյական և մշակում էր բարոյական նոր սկզբունքներ, ելնելով իր դավանական հայացքներից։

Կանոնագրքի մի այլ ծայրը ուղղված էր Հայաստանում հանդես եկած աղանդների՝ մծղնեականների և պավլիկյանների դեմ։ Այս հարցի մասին Կանոնագրքում պահված են Շահապիվանի ժողովի ԺԹ, Ի և Հովհաննես Օձնեցու կանոնախմբի ԼԲ հոդվածները։ Վերջիններս գաղափար են տալիս հասարակական տարբեր շերտերի աղանդավոր ներկայացուցիչների համար նախատեսվող դաժան խոշտանգումների և պատժի ձևերի մասին։ Հայ եկեղեցին, օրինակ, մծղնեության հարող ընտանիքի չափահաս անդամների համար խիստ պատիժներ սահմանելուց հետո, հասարակությունից նրանց մեկուսացնելու նպատակով արգելափակում էր դղեկոցներում, իսկ անչափահաս երեխաներին խլում ծնողներից և նրանց հոգևոր դաստիարակության գործը հանձնում եկեղեցու հայրերին, որպեսզի «սնուցեն եւ ուսուցեն զնոսա ի հաւատս ճշմարիտս եւ յերկիւղ Տեառն»[1]։

ժԵ. Ֆ. Էնգելսը նշում է, որ «վանքերը աննորմալ հասարակական մարմիններ էին, որոնք հիմնված էին ամուրիության վրա»[2] և գտնվում էին բացառիկ վիճակում։ Այդ վիճակի՝ եկամուտների, ապահարկության մասին ուշագրավ նյութեր գտնում ենք Սահակ Պարթևի և Դվինի ժողովի կանոնախմբերում։ Այս, ինչպես նաև Ներսես Բ Բագրևանդացի կաթողիկոսի և Ներշապուհ եպիսկոպոսի կանոնախմբերում հետաքրքիր և շեշտված հաղորդումներ կան հոգևորականության ապահարկության, «աղատ»-ների երկու շերտերի՝ ազնվականների և եկեղեցականների միջդասային պայքարի մասին, մի պայքար, որի նպատակն էր տնտեսապես թուլացնել եկեղեցին, սահմանափակել հոգևորականության եկամուտի աղբյուրները և նրան դարձնել հարկատու։

Կանոնագիրքը անգնահատելի հնարավորություններ է ընձեռնում իմանալու Հայաստանի վաղ միջնադարում գոյություն ունեցող տնային ստրկության և սրա աղբյուրների, եկեղեցական պաշտոնների ժառանգության և այդ պաշտոնների դիմաց տրված հողի պայմանական օգտագործման իրավունքի (խոստակի)[3], հոգևորականության շվայտ կյանքի և կենցաղի մասին։ Վերևում նշված բազմաթիվ հարցերը կարող են պատմաբանների և տնտեսագիտության պատմությամբ զբաղվողների հետաքրքրության առարկան դառնալ Կանոնագրքի միջոցով։ Կանոնագրքի մատակարարած նյութերի շնորհիվ պատմաբանները և իրավունքի պատմությամբ զբաղվողները պետք է ուսումնասիրեն հայ միջնադարյան սոցիալական կամ իրավական առանձին հասկացությունների՝ խոստակ(դար), բեգար և կոռ, իրական բովանդակությունը, ինչպես նաև իրավունքի պատմության կարևոր պրոբլեմները՝ ընտանեկան հարաբերու-

---

[1] Տես ներքևում, էջ 462։

[2] Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1932, էջ 187։

[3] Ակադ. Հ. Մանանդյանը «Ֆեոդալիզմը հին Հայաստանում» աշխատության մեջ քննելով այս երևույթը (էջ 104—114) օգտագործել է Վաչագան Աղվանից արքայի կանոնախմբի և Ստ. Օրբելյանի տվյալները։ Այստեղ կնշենք մի նոր վկայություն ևս, որի ժամանակը դժբախտաբար հայտնի չէ։ Երևանի Պետ. Մատենադարանի № 4779 ձեռագրի վերջին պահպանակում (XIV—XV դդ.) գտնվում է հետևյալ հատվածը. «Այլ և ամենայն ուբհնութեան աղբիւրն ուբհնեսցէ դձեզ յա [մենայն] աշխարհի՝ տամբ և տեղօք, գարմաւք և գաւակօք, դաշտաւք և խոստակօք և ամենայն գոյուք. ամէն» (վերջին պահպանակ, էջ 2ա)։

թյանների, ժառանգության, քրեական և քաղաքացիական իրավունքի հարցերը և այլն։

ԺԶ. Կանոնագիրքը հանդիսանալով իրավաբանական փաստաթղթերի առաջին խոշոր և փաստալից ժողովածու, դարերի ընթացքում անսպառ աղբյուր է հանդիսացել հետագա հայ իրավունքի այնպիսի խոշոր երկերի համար, ինչպիսին են Մխիթար Գոշի, Սմբատ Գունդստաբլի աշխատությունները։ Բանասիրությունը մեծ անելիքներ ունի այս բնագավառում։ Նրա խնդիրն է ցույց տալ ինչպես Կանոնագրքի ձևավորման սկզբունքները և աղբյուրները, այնպես էլ վերոհիշյալ հեղինակների Կանոնագրքից օգտվելու սահմաններն ու չափերը և ապա իրավաբանական ձևակերպումները կյանքի առաջ քաշած այն հարցերի լուծման, որոնց մասին հասկանալի պատճառով Կանոնագրքում ոչինչ չենք գտնում և որոնց հանդիպում ենք Մխիթար Գոշի, Սմբատ Գունդստաբլի դատաստանագրքերում։

Կանոնագիրքը զգալի չափով նյութ է տալիս լեզվաբաններին ոչ միայն հայոց լեզվի բառային պաշարի՝ մասնավորապես հունարենից կատարված թարգմանությունների ժամանակ ստեղծված նոր բառերի, այլև լեզվի շարահյուսության վերաբերյալ։ Կանոնագիրքը նյութեր է պարունակում նաև բժշկության՝ մասնավորապես առողջաբանության, և առանձին դեպքերում բարդ վիրահատությունների մասին, կապված դատական բժշկության հարցերի հետ։ Վերջապես Կանոնագիրքը հետաքրքրության առարկա կարող է դառնալ հայ փիլիսոփայական մտքի պատմությամբ զբաղվողների համար, կապված հայ միջնադարյան փիլիսոփայության և մտածողության խնդիրների հետ։

Սակայն, Կանոնագրքի ուսումնասիրության գիտական նշանակությունը սրանով չի սպառվում։ Բանը նրանումն է, որ առանձին կանոնախմբերի հայերեն թարգմանության համար հիմք դարձած հունարեն բնագրերն ավելի հին են, քան նույն կանոնախմբերի մեզ հասած հունարեն բնագրերը (օրինակ՝ Նիկիայի, Կ. Պոլսի, Եփեսոսի ժողովների և Բարսեղ Կեսարացու կանոնախմբերը և այլն)։ Այդ պատճառով հունարենից հայերեն թարգմանված առանձին կանոնախմբերի բնագրերը ուսումնասիրելուց հետո թերևս սրբագրություններ մտցվեն մեզ հասած հունարեն համապատասխան կանոնախմբերի բնագրերում։

Այսպիսով, հասարակական գիտությունների տարբեր բնագավառներ Կանոնագրքի ուսումնասիրությանը պետք է մոտենան իրենց հետաքրքրող կոնկրետ հարցերի տեսանկյունից։ Հայագիտությունը անցնելով այդ հարցերի, որպես ճանաչողության առանձին արահետների, քննության ու լուսաբանության ոլորտով, դուրս կգա գիտական իմացության ավելի լայն և ուղիղ ճանապարհ։

ԺԷ. Վերևի շարադրանքից արդեն իսկ պարզ է դառնում Կանոնագրքի պատմագիտական նշանակությունը, առանց որի բազմաթիվ հարցերի լուսաբանումը կլիներ խիստ թերի ու միակողմանի։ Կանոնագրքի պատմագիտական մեծարժեք նշանակության պատճառով է, որ հետաքրքրության առարկա էր դարձել այն՝ շուրջ երկու հարյուր տարի, սկսած Մ. Չամչյանից։ Սակայն նախասովետական հայագիտությունը Կանոնագրքին անդրադառնում էր ավելի նեղ հարցերի՝ դավանաբանական, ծիսական, երբեմն էլ բանասիրական և իրավաբանական որոշ խնդիրների լուսաբանման համար։ Ավելին՝ առանձին դեպքերում ձեռնարկելով Կանոնագրքի հրատարակությանը՝ որոշ հրատարա-

կողներ փորձում էին այն օգտագործել ոչ միայն «Քրիստոնեա Հայաստանի ընկերական կեանքի.... Նրա քաղաքական բարքի և վարքի...»[1] լուսաբանության համար, այլ նաև գործնական նկատառումներով՝ թե «այսօր էլ մեր ազգային ընկերական կեանքի համար ի՞նչ օգուտ կարող ենք քաղել մեր սուրբ Հայրերի հաստատած օրէնքներից»[2]։

Այսպիսով, Կանոնագիրքը չէր դիտվում որպես ավատական հասարակության հարաբերությունները և իրավական նորմաններն արտացոլող մի կարևոր սկզբնաղբյուր։ Հետևապես, Կանոնագիրքը քննության չէր ենթարկվում ըստ էության պատմա-բանասիրական լայն խնդիրների՝ հայկական վաղ ավատատիրության տնտեսական, քաղաքական և իրաբանական հարաբերությունների ամբողջական հարցերի ուսումնասիրության ոլորտում։ Սովետական կարգերի հաստատումից հետո միայն, անցած տարիներում, մեզ մոտ եղան ուսումնասիրության լուրջ փորձեր՝ Կանոնագիրքը դիտելու որպես հայ ժողովրդի ավատական հասարակության վաղ շրջանի ներքին կյանքին վերաբերող խիստ ուշագրավ և կարևոր սկզբնաղբյուր[3]։

Ձեռնամուխ լինելով Կանոնագրքի ամբողջական և գիտական հրատարակության աշխատանքներին, հետապնդել ենք մեկ նպատակ՝ այս հրատարակությամբ վեր հանել Կանոնագրքի ճանաչողական նշանակությունը, Կանոնագիրքը դարձնել գիտական հասարակայնության սեփականություն, դրանով իսկ ընդլայնել մեր գիտելիքները հայ ժողովրդի միջնադարյան ներքին կյանքի պատմության մի շարք կարևոր պրոբլեմների ուսումնասիրության վերաբերյալ։

ԺԸ. Կանոնագիրքը ձեռագիր այն վիճակով, ինչպես մեզ է հասել, հրապարակված չէ, սակայն տարբեր ժամանակներում ու վայրերում և տարբեր տոհմներով Կանոնագրքից որևէ շարք կամ առանձին կանոնախմբեր բավականաչափ հրապարակվել են։ Այստեղ ժամանակագրական կարգով նշում ենք համեմատաբար ընդարձակ հրատարակությունները.

ա. Angelo Mai, Scriptorum veterum nova collectio e Vaticanis codicibus edita, tomus X, Romae, MDCCCXXXVIII։ Այս հրատարակության մեջ մտել են հայկական կանոնախմբերը Վատիկանի մատենադարանի հայերեն մի ձեռագիր կանոնագրքից՝ Արս. Անճարակյանի լատիներեն թարգմանությամբ[4]։

բ. Մ. Աղաբեկյանը նպատակ էր ունեցել մեկ ձեռագրի հիման վրա հրա-

[1] Ծիլն Աւարայրի, 1867, № 3, էջ 126։

[2] Նոյն տեղում, էջ 127։

[3] Տես ակադ. Հ. Մանանդյան, Դիտողութիւններ հին Հայաստանի շինականների դրութեան մասին, մարզպանութեան շրջանում, Երևան, 1925. Նոյնի, Նյութեր հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմութեան, I, Երևան, 1927, II, Երևան, 1928. Նոյնի, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Նոյնի, Քննական տեսութիւն հայ ժողովրդի պատմութեան, հտ. Բ, մասն Ա, Երևան, 1957. Թ. Ավդալբեկյան, Հայ շինականի ու գեղջկուհու աշխատավարձը հինգերորդ դարում. Ս. Ե. Հակոբյան, Հայ գյուղացիութեան պատմութիւն, հտ. Ա։

[4] Գրիգոր Լուսավորչի (էջ 269—270), Ներսեսի և Ներշապուհի (էջ 272—276), Սահակ Պարթևի (էջ 276—289), Շահապիվանի (էջ 290—296), Հովհան Մանդակունու (էջ 296—299, 314), Աբրահամ Մամիկոնեից (էջ 299—300), Սահակ Ձորոփորեցու (էջ 300—302), Հովհաննես Օձնեցու (էջ 302—307), Սիոնի (էջ 307—310), Դվինի (էջ 310—312), Կարինի (էջ 312–314), Վաչագանի (էջ 314—316) կանոնախմբերը։

*տարտկել ամբողջ Կանոնագիրքը, սակայն նա «Ծիլն Աւարայրի»-ի 1867 թ. մի քանի համարներում[1] հրատարակեց միայն չորս կանոնախումբ՝ Առաքելական (Ա), Կղեմեսի, Հարանց հետևողաց և Նիկիայի ժողովի (ներառյալ նաև Կոստանդիանոս թագավորի ուղերձը և Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկը). այնուհետև հրատարակումը ընդհատվեց։*

*գ. Աբել արքեպիսկոպոս Մխիթարյանց, Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ հանդերձ կանոնադրութեամբք ի պէտս ժառանգաւորաց, Վաղարշապատ, 1874։ Այստեղ Կանոնագրքից մտել են միայն հայկական եկեղեցական ժողովների և նշանավոր գործիչների կանոնախմբեր, երբեմն բովանդակության վերաշարադրմամբ և կրճատումներով։*

*դ. Աղ. Պալճեան, Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս, Վիեննա, 1878։ Հավելվածում հրատարակվել է Կանոնագրքի մեջ մտած Սահակ Պարթևի կանոնախմբի մի ենթաբաժինը (էջ 191—194) և Հովհաննես Օձնեցու կանոնախումբը (էջ 195—201)։ Մնացած կանոնախմբերը, որոնք հրատարակված են այնտեղ՝ Շիրակվանի (862 թ.), Սսի (1243 թ., 1307 թ.), Ադանայի ժողովների և այլ նյութեր, չեն մտնում Կանոնագրքի մեջ։*

*ե. Ն. Մելիք-Թանգյան, Հայոց եկեղեցական իրաւունքը, Ա գիրք, Շուշի, 1903։ Այս հրատարակությունը համեմատաբար ավելի շատ կանոնախմբեր է պարունակում, սակայն Կանոնագիրքը դարձյալ լրիվ ընդգրկված չէ։ Հրատարակության մեջ Կանոնագրքի կառուցվածքից ոչինչ չի մնացել, հրատարակիչը իր խմբավորմամբ տալիս է հունարեն առանձին կանոնախմբերի թարգմանությունները (հունարենից թե ռուսերենից) կրճատումներով, համառոտ վերաշարադրմամբ, ամբողջ կանոններ դեն նետելով, թարգմանությանը կցելով քննադատական իր դիտողությունները, որոնք հաճախ անտեղի են, և այնուհետև հայ հին թարգմանության բնագրերը։*

*զ. Ա. Ղլտճյան, Կանոնգիրք Հայոց, Թիֆլիս, 1914։*

է. H. Ghedighian, Collectio Canonum Ecclesiae Armenae, I, Canones Apostolici, Venezia, 1941[2]։

*Վերևում նշված հրատարակություններից և ոչ մեկը նույնիսկ մոտավոր պատկերացում չի տալիս Կանոնագրքի, նրա կառուցվածքի և բովանդակած նյութերի մասին։ Երևս դա է պատճառը, որ Մ. Օրմանյանը իր «Ազգապատում» աշխատության մեջ հրաժարվել է օգտագործել վերոհիշյալ հրատարակությունները և գերադասել է օգտվել Սկյուտարի Ս. Խաչ եկեղեցում գտնվող 1831 թ. ընդօրինակած Կանոնագրքից։ Իսկ հետագա ուսումնասիրողները պատմա-բանասիրական իրենց աշխատություններում մեծ մասամբ օգտագործել են Ա. Ղլտճյանի վերոհիշյալ հրատարակությունը[3]։*

---

[1] *Մարտ, էջ 129—136, ապրիլ, էջ 153—167, մայիս, էջ 193—206, հունիս, էջ 249—263։*

[2] *Այստեղ հրատարակված են Կանոնագրքի մեջ մտած հինգ կանոնախմբեր՝ Առաքելական (Ա) (էջ 1—41), Կղեմայ (էջ 42—72), Հարանց հետևողաց (էջ 73—84), Թադէոսի (էջ 85—110) և Փիլիպպոսի (էջ 111—116), գրաբարյան բնագրերը և իտալերեն թարգմանությունը։ Հրատարակության համար օգտագործված է 13 ձեռագիր և 3 հրատարակություն (Ա. Ղլտճյանի, Ն. Մելիք-Թանգյանի և Հ. Տաշյանի)։ Ունի իտալերեն (էջ V—VIII) և հայերեն (էջ IX—XIII) լեզուներով առաջաբան և հեղինակի կողմից կազմված առարկայական ցանկեր, դարձյալ երկու լեզուներով՝ հայերեն (էջ 117—119) և իտալերեն (էջ 120—122)։*

[3] *Ով թեկուզ մի թեթև ծանոթ է Կանոնագրքի ձեռագրերին և Ա. Ղլտճյանի հրատարակությանը, ապա նա չի կարող չհիասթափվել այդ հրատարակությունից. պրոֆ. Լ. Մե-*

Կանոնագիրքը ուրույն ձևով վերակազմեց և հրատարակեց Արիստակես Դավթյանը՝ հոդվածների բովանդակության համաձայն կատարելով զանազան խմբավորումներ[1]։

---

լիքսեթ-Բեկը, տակավին 1917 թ. գրում էր. «... „Книга канонов" (Կանոնագիրք Kanonagirq) в ее целом, до сих пор еще не опубликована. Имеющееся же в наличности издание Арсена Кантчяна Կանոնգիրք Հայոց («Ղուկասեան Մատենադարան», кн. XII, Тфл. 1914), не только не является воспроизведением этого замечательного памятника древне-армянской письменности, но и в значительной степени лишено научного значения, ибо оно представляет собою не что иное, как собрание различных категорий канонических правил, составленное хотя и на основании 25 рукописей, однако, без обозначения разночтений, и, притом, в произвольной группировке самого издателя. То же самое приходится сказать и относительно изданий—архим. (ныне епиcк.) Нерсеса Мелик-Тангяна «Հայոց եկեղեցական իրաւունքը. ա. գիրք. Ներածութիւն և աղբիւրներ (Шуша, 1903)...» („Об источниках древнеармянского права", ст. 143, տես Известия Кавказского Историко-Археологического Института, том II, Л. 1927)։ Ա. Ղլտճյանը, կանոնագրքից վերցնելով առանձին կանոնախմբեր, խմբավորել է և լրացրել այնպիսի ժողովների կանոններով, ինչպես Աշտիշատի, Մանազկերտի, Սսի, Զաղավանի, Երուսաղեմի, որոնք երբեք չեն մտել կանոնագրքում։ Երբեմն էլ թերի են բերված առանձին կանոնախմբեր, օրինակ, Առաքելական (Ա) և այլն։ Ահա և պրոֆ. Խ. Սամուելյանի կարծիքը. «Այս հրատարակությունը զուրկ է գիտական արժեքից։ Նախ՝ այստեղ չեն նշված այն ձեռագրերը, որոնցից օգտվել է հրատարակիչը.... դա (Ա. Ղլտճյանի հրատարակությունը— Վ. Հ.) ոչ թե պատմական, որոշ չափով կոդիֆիկացիա տեսած, իսկական կանոնագիրքն է, այլ անհատորեն, Ա. Ղլտճյանի «Նոր խմբած», մի հավաքածու, այլ խոսքով՝ իր «հորինած» կանոնագիրքը» (Հին հայ իրավունքի պատմություն, հատ. 1, էջ 53—54)։ Եվ իսկապես, վերջինիս հրատարակության տիտղոսաթերթում այդպես էլ նշված է. «Խմբեց Արսեն Ղլտճյան»։ Իսկ եթե սրան ավելացնենք այդ հրատարակության անփույթ և սխալաշատ լինելը, թերևս վերջացնենք մեր ասելիքը։ Միայն մեկ օրինակ. Հով. Մանդակունու կանոնախմբի Դ հոդվածի մի հատվածը ըստ Ա. Ղլտճյանի հրատարակության այսպես է. «Զի գինի և հաց, օղի և մեղր մի են» (էջ 85), ըստ կանոնագրքի՝ «զի գինի եւ հացաւղի եւ մեղրաւղի եւ ամբրաւաւղի մի են» (տես ներքևում էջ 496)։ Պարզաբանումներն ավելորդ են, մանավանդ որ նման փաստերը եզակի չեն։

[1] «Կանոնք ս. ժողովոց և հարց եկեղեցւոյ» վերնագրով նախապես լույս տեսավ «Լումայ» երկամսյա հանդեսի 1900—1904 թթ. առանձին համարների հավելված բաժնում (տես 1900 թ. № 1, էջ 1—16, № 2, էջ 17—32, 1901 թ. № 1, էջ 33—48, 1902 թ. № 2, էջ 49—64, № 4, էջ 65—80, № 6, էջ 81—96, 1903 թ., № 2, էջ 97—112, № 4, էջ 113—128, 1904 թ., № 1, էջ 129—140), իսկ այնուհետև առանձին արտատպվեց 1904 թ., որպես Ա պրակ։ Հրատարակիչը, ինչպես կանոնագիրքը, այնպես էլ կանոնագրքում չմտած եկեղեցական ժողովների որոշումներ, ասենք՝ Սսի երկու ժողովները (1204 թ. և 1243 թ.) վերածել է առարկայական (թեմատիկ) խմբավորման, օրինակ՝ «Ա. Յաղագս աղօթելոյ և ընդ արևելս աղօթելոյ» (էջ 1—4), «Բ. Յաղագս աւուրց պատարագի, և պատարագի» (էջ 4—10) և այլն։ Այս վերնագրերի տակ նա դրել է տարբեր կանոնախմբերից քաղված համապատասխան հոդվածներ, հրատարակության էջերի ձախ կողմում նշելով կանոնախմբերի պատկանելությունը և տվյալ հոդվածների մասնավոր և ընդհանուր համարները։ Այս ձևով նա կանոնագիրքը (և ոչ միայն կանոնագիրքը) վերածել է մի քանի տասնյակ առարկայական խմբավորման և դրանցից հրատարակել 35-ը։ Համենայն դեպս մեզ հայտնի է 35 առարկայական վերնագրերի հրատարակությունը՝ համապատասխան կանոններով հանդերձ։ Իսկ թե այս աշխատությունն արդյո՞ք ունեցել է շարունակություն՝ հաջորդ պրակները և ինչո՞ւ դրանք չեն հրատարակվել, մեզ մնաց անհայտ։ Հմմտ. պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկի կարծիքն այս հրատարակության մասին (տես նախորդ էջում նշված ռուսերեն աշխատությունը)։

Երևանի Մատենադարանի Արխիվային բաժնի մի վավերագրում (ֆոնդ Զանազան, թղթ. № 43, վավ. № 5), որի վրա մեր ուշադրությունը հրավիրեց Մատենադարանի գիտաշխատակից ընկ. Ս. Ավագյանը, պահվում է Արիստակես Դավթյանի սկզբունքով կազմը-

Այսպիսով, մինչև այժմ հայագիտության մեջ չունենք ոչ միայն Կանոնագրքի գիտական, այլ նույնիսկ սովորական, բայց ամբողջական հրատարակություն։

Ճշմարտության դեմ չմեղանչելու համար, պետք է, սակայն, նշել, որ գիտական պատշաճ բարեխղճությամբ հրատարակվել են Կանոնագրքի միայն առանձին կանոնախմբեր, օրինակ, Առաքյալների[1], Շահապիվանի ժողովի[2], Սեսնտոսի[3], Գանգրայի ժողովի[4] և ապա Պարտավի[5], Դվինի[6] ժողովների։ Բայց սրանք էլ կտրված լինելով Կանոնագրքի համաբնագրից (կոնտեքստ), ոչ մի պատկերացում չեն տալիս Կանոնագրքի մասին։

ԺԹ. Այսպիսին էր իրերի վիճակը, երբ տակավին 1954 թվականից ձեռնամուխ եղանք Կանոնագրքի ուսումնասիրության, նրա բնագրի գիտական հրատարակության պատրաստման աշխատանքներին։ Այդ նպատակով առաջին հերթին ծանոթացանք Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր

ված Կանոնագրքի մի այլ խմբագրության սեագրություն (էջ 8ա—95ա)։ Այն կազմել է Էջմիածնի միաբան Հովհաննես Շահխաթունյանցը, անցյալ դարի առաջին տասնամյակներում։ Աշխատության 1ա էջում, հավանաբար ոչ Շահխաթունյանցի ձեռագրով, նշված է. «Կանոնք առաքելոց և հայրապետաց սրբոց հաւաքեալք ի Յովհաննէս վարդապետէն Շահխաթունեանց վաթսուն երկու տետրակք, յորս պակասին ԻԹ, ԽԴ և ԾԶ տետրակքն և մնացեալքն ամենայն են թերի»։ Աշխատությունը ներկա վիճակով ունի 61 թեմատիկ վերնագիր, ուր պակասում են ոչ միայն վերևում նշված ԻԹ, ԽԴ և ԾԶ տետրակները, այլև ուրիշ թեմատիկ վերնագրեր (իմա՝ տետրակներ), թվով 10՝ ԺԱ, ԺԳ, ԺԶ, ԺԷ, ԻԱ-ԻԴ, Լ, ԼԱ։ Այսպիսով, պակասում են ընդամենը 13-ը (3+10)։ Ենթադրում ենք, որ այս աշխատությունը չի ավարտվում 61-րդ թեմատիկ վերնագրով։ Վերևում նշված մեջբերումից իմանում ենք, որ ողջ աշխատությունը ունեցել է 62 տետր, սակայն պակասում են 29-րդ, 44-րդ և 56-րդ տետրերը։ Թեմատիկ վերնագրերի հաջորդականությունն սաուդելիս, չկային նաև 29-րդ, 44-րդ և 56-րդ թեմատիկ վերնագրերը։ Այստեղից ենթադրում ենք, որ տետրակի հասկացությունը համընկնում է մի թեմատիկ վերնագրի հասկացությանը. թեև այժմ թեմատիկ վերնագրերը ամբողջական տետրից չեն, այլ տետրերից պոկված մեկ-երկու գրված էջեր, իսկ մյուս չգրված էջերը պոկված են և հեռացված բնագրից։ Նշանակում է վերջին՝ 62-րդ տետրակը հենց նույն համարի թեմատիկ վերնագիրն է, ուրեմն, վերջից պակասում է մի թեմատիկ վերնագիր։

Այս և Առիստակես Դավթյանի հրատարակության բնագրերի համեմատությունը մեզ բերեց այն համոզման, որ դրանք ամենայն հավանականությամբ միմյանց հետ չաղերսվող և առանձին կազմված աշխատություններ են, թեև թեմատիկ վերնագրերի հաջորդականությունը համապատասխանում են միմյանց։ Վերջին հանգամանքը բացատրում ենք նրանով, որ երկու հեղինակներն էլ ելակետ են ունեցել Կանոնագրքի առաջին՝ Առաքյալների անունով հայտնի կանոնախմբի հոդվածների հաջորդականությունը։ Ընդհանուր առմամբ Առիստակես Դավթյանի հրատարակության մեջ թեմատիկ վերնագրերի տակ բերված հոդվածներն ավելի բազմազան են, քան Հովհաննես Շահխաթունյանցի աշխատության։ Հարկ է նշել նաև, որ երկու հեղինակներն էլ օգտագործել են Կանոնագրքի Բ խմբի որևէ ձեռագիր։

[1] Հ. Տաշյան, Վարդապետութիւն առաքելոց, Վիեննա, 1896, էջ 289—385։

[2] Ն. Ակինյան, Շահապիվանի ժողովին կանոնները, Հանդէս Ամսօրեայ, 1949, №№ 4—12, էջ 79—170։

[3] Ն. Ակինյան, Դեոնեսիոս Աղեքսանդրացի Թուղթ վասն ապաշխարութեան առ Մեբուժան եպիսկոպոս Հայոց, Հանդէս Ամսօրեայ, 1949, №№ 4—12, էջ 59—78։

[4] Լ. Խաչիկյան, Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից (IV դար), Երևան, 1951, էջ 90—112։

[5] Ա. Ղլտճյան, Կանոնք Պարտաւի տեղային ժողովի (Սիոն կաթողիկոսի), Վաղարշապատ, 1903։

[6] Մխիթար վրդ. և Սիրական Տիգրանյան, Կանոնք Դունայ սբ. ժողովոյն, Վաղարշապատ, 1905։ Ա. Ղլտճյան, Կանոնք Ներսէսի Բ կաթուղիկոսի և Ներշապուհ Մամիկոնէից եպիսկոպոսի, Վաղարշապատ, 1905։

Մեսրոպ Մաշտոցի անվան հին ձեռագրերի գիտահետազոտական ինստիտուտի («Մատենադարանի») կանոնագիրք-ձեռագրերին, օգտագործելով Մատենադարանի աշխատակիցների կողմից կազմված մատենագիտական ցուցակը (անտիպ)։ Սկզբում ծանոթացանք շուրջ 200 ձեռագրերի հետ։ Այնուհետև յուրաքանչյուր ձեռագիր մանրամասն ուսումնասիրելուց հետո, մեզ համար պարզ դարձան ոչ միայն այն ձեռագրերը, որոնք պետք է օգտագործեինք Կանոնագրքի գիտական բնագիրը կազմելիս, այլև կանոնագիրք-ձեռագրերի այն խմբերը, որոնց զգալի մասի վերաբերյալ մանրամասն խոսել է Ս. Տիգրանյանը[1]։

Առայժմ մեր նպատակից հեռու է կանոնագիրք-ձեռագրերի խմբերի մասին խոսելը[2]։ Այստեղ դրանցից կառանձնացնենք 47 ձեռագրեր, որո՞նք օգտագործել ենք Կանոնագրքի համահավաք բնագիրը կազմելու համար։ Սրանք այն ձեռագրերն են, որոնց մեջ Կանոնագիրքը պահվել է լրիվ, առանց կրճատումների, այն ձևով, ինչ ձևով այն կարող էր լինել Հովհաննես Օձնեցու և նրանից հետո կատարված լրացումների ժամանակ, մինչև XI դարը։ Այդ ձեռագրերին անհրաժեշտ է ավելացնել նաև Նոր-Ջուղայի (Իրան) Ամենափրկիչ վանքի Մատենադարանի № 131 ձեռագիր-կանոնագիրքը (1098 թ. ընդօրինակություն), որն օգտագործել ենք լուսանկարչական պատճենի միջոցով[3]։ Այսպիսով, Կանոնագրքի համահավաք բնագիրը կազմելիս օգտագործել ենք 48 ձեռագիր։ Այս ձեռագրերում կանոնախմբերը տարբեր հաջորդականություն և դասակարգում ունեն։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, նշված ձեռագրերը բաժանում ենք երկու խմբի[4]. Ա. խումբ, որին պատկանում են մեր օգտագործած ձեռագրերից 29-ը. Բ խումբ, որին պատկանում են 18 ձեռագրեր. իսկ մնացած մեկ ձեռագիրը չի պատկանում նշված խմբերից ոչ մեկին[5]։ Այստեղ կարևորը Ա և Բ խմբերն են, որովհետև միմիայն դրանց միջոցով կարելի է մոտավոր կերպով պարզել, թե Կանոնագիրքը Հովհաննես Օձնեցու ժամանակ ինչպիսի՞ կառուցվածք կարող էր ունենալ։

Ի. Թե ինչպե՞ս է կառուցված Կանոնագիրքը Ա խմբի ձեռագրերում, կարելի է տեսնել այս խմբի հնագույն օրինակում (Նոր-Ջուղայի Ամենափրկիչ վանքի մատենադարանի № 131 ձեռագիրը, այսուհետև կնշենք A), որի մեջ «Շարադրութիւն կանոնաց եդեալ եւ այս կարգ եւ չափ գլխոցն» վերնագրի տակ տրված է կանոնախմբերի հաջորդական ցանկը[6]։

---

[1] Сиракан Тигранян, Древне-армянская книга канонов. Очерки описания и исследования памятника, I, описательная часть, Петроград, 1918.

[2] Կանոնագրքի ձեռագրերի խմբերի, առանձին կանոնախմբերի թարգմանության, կանոնական նոր շերտերի ավելացման և պատմա-բանասիրական այլևայլ հարցերի մասին կանդրադառնանք Կանոնագրքին նվիրված մեր ուսումնասիրության մեջ։

[3] Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի խընդրանոք նշված ձեռագրի լուսանկարչական պատճենը ձեռք է բերել և ինստիտուտին հանձնել Ամենայն Հայոց Կաթողիկոս Վազգեն Ա-ն։

[4] Ա և Բ խմբերի մասին տես նաև Ս. Տիգրանյանի վերևում նշված աշխատության 45—124 էջերը։

[5] Այս ձեռագիրը կրում է 778 համարը (Ռ), որն իր ընթերցվածներով ավելի մոտ է Ա խմբին, բայց կառուցվածքով տարբերվում է և՛ Ա և՛ Բ խմբերից, թեև այն բովանդակում է A-ի բոլոր 57 կանոնախմբերը։

[6] Այդ հաջորդականությունը չկրկնելու համար տես ներկա հրատարակության 3—4 էջերը։

Այսպիսով՝ A ձեռագիրը պարունակում է Առաքելական (Ա) կանոնախմբից մինչև Հովհան Մանդակունու «Ի կոչումն ապաշխարութեան» աշխատությունը, թվով 57 կանոնախումբ[1]։ Միևնույն նյութերն ու կառուցվածքն ունեն նաև №№ 9298 (P) և 3148 (U) ձեռագրերը։ Միայն U-ն 57-րդ կանոնախմբի վերջում, ինչպես ներքևում նշված BCDEFGH ձեռագրերում է, ավելացված ունի մի նոր՝ 58-րդ կանոնախումբ, բայց ոչ Սիմոն Աղվանից կաթողիկոսի կանոնախումբը, այլ Հովհան Ոսկեբերանի «Յաղագս սահմանի կանոնաց կարգաւորաց, որք գան ի խոստովանութիւն» կանոնախումբը։

Յոթ ձեռագիր՝ №№ 6409 (B), 8926 (C), 795 (D), 2635 (E), 6496 (F), 2655 (G), 2596 (H), ունեն նույն կանոնախմբերը և դասավորությունը, ինչ որ նշեցինք վերևում, միայն սրանց վերջում ավելացված է Սիմոն Աղվանից կաթողիկոսի կանոնախումբը՝ որով ստացվում է 58։

Տասնհինգ ձեռագիր՝ №№ 8158 (I), 3706 (J), 4403 (K), 4631 (L), 5782 (M), 5894 (Q), 2883 (R), 3097 (S), 9488 (T), 3099 (V), 449 (X), 3297 (Y), 7317 (Z), 3059 (W), 3065 (Ô), թեև ունեն միևնույն կանոնախմբերը և դասակարգությունը, ինչ APU և սրանց հարող վերևի յոթ ձեռագրերը, բայց բուն ձեռագրերի (ոչ կանոնախմբերի ցանկում) վերջում՝ Հովհան Մանդակունու «Ի կոչումն ապաշխարութեան» կանոնախմբից հետո ավելի ունեն երեք կանոնախումբ, որ բերում ենք I ձեռագրի ընթերցմամբ. «Նորին կանոնք երրորդ Բարսեղի Կեսարու հայրապետին արարեալ, գլուխք ՀԴ (պետք է լինի ՀԼ: — Վ. Հ.)։ Յոհաննու Ոսկեբերանի Յաղագս սահմանի կանոնաց կարգաւորաց, որք գան ի խոստովանութիւն։ Յաղագս պսակի ամուսնացելոց»[2]։ Ահա թե ինչ է գրված ձեռագրում՝ վերևում նշված այս երեք կանոնախմբի մասին. «Մանիշիք ով իմաստուն ընթերցողք, որ այս Դ կանոնքս՝ Բարսղի ՀԷ գլուխն եւ Յոհան Ոսկէբերանին ԾԴ գլուխն եւ Յակոբ Ղրիմեցոյ կանոնքն, ոչ կայր ի բուն օրինակն. մեք յայլմէ ծեր օրինակէ գտաք եւ եդաք աստ ի կարգի, անմեղադիր լերուք»[3] (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Այս հիշատակարանն

---

[1] Λ ձեռագրի կանոնախմբերի ցանկում թյուրիմացաբար պակասում է երկու կանոնախմբի վերնագիր, դրանք են, նախ՝ «Կանոնական գիր տեառն Նպիփանու աստցեալ գլուխք Ե» կանոնախումբը, որը գտնվում է «Կանոնք Կիրղի Աղեքսանդրացւոյ գլուխ Ե» և «Եղիշէի գլուխ Ա», կանոնախմբերի միջև. երկրորդ՝ «Սորոյն Աթանասի մեծի Ա բան» փոքրիկ կանոնախումբը, որը գտնվում է «Մելիտոնի եպիսկոպոսի թուղթ առ... գլուխ Ա» և «Սերբիանոսի ի Ղուկա աւետարանին մեկնութենէ» կանոնախմբերի միջև. իսկ ցանկում առաջինը պետք է դանվեր Լ և ԼԱ, իսկ երկրորդը՝ ԽԸ և ԽԹ վերնագրերի միջև։ Այսպես է վիճակը նաև J ձեռագրում։ Հմմտ. նաև П ձեռագրի ցանկը։ Հրատարակության բնագրում ուղղանկյուն փակագծերի՝ [ ] միջոցով ավելացրինք այդ բացթողումները։ Քանի որ այդ լրացման հետևանքով փոխվում էին կանոնախմբերի վերնագրերի հաջորդական համարները, այդ պատճառով սկսած ԼԱ վերնագրից բնագրի ունեցած համարները վերցրինք կլոր փակագծերում՝ ( ) և յուրաքանչյուրի մոտ նշեցինք հերթական ճիշտ համարը։

[2] Տես ձեռագրի 342բ—367բ էջերում։ Q ձեռագրում այդ երեք կանոնախումբը դարձյալ ավելացված է կանոնագրքի վերջում և ցանկում ոչ մի նշում չկա այդ մասին, սակայն մեկ ուրիշը, հավանաբար 19-րդ դարում, ցանկի վերջում գրանցել է այդ երեք կանոնախմբերի վերնագրերը. «Կանոնք երրորդ Բարսեղի Կեսարու հայրապետին արարեալ, գլուխս ՀԻ։ Տեառն Յովհաննու Ոսկեբերանի Յաղագս սահմանի կանոնաց կարգաւորաց, որք գան ի խոստովանութեան գլ. ԾԴ։ Յաղագս պսակի ամուսնացելոց հանդերձ ճիւղագրութեամբք և ազգահամարաւ» (էջ 15ա)։ Ճիշտ այդպես է վարվել մեկ ուրիշը X ձեռագրի այդ կանոնախմբերի հետ, ցանկում նշելով վերևում նշված միայն առաջին երկու կանոնախմբերի վերնագրերը (էջ 13բ)։

[3] էջ 369բ, հմմտ. նաև J, էջ 229ա։

*ավելի համառոտ գտնում ենք նաև* T *և սրան հարող մի քանի ձեռագրերի վերևում նշված երեք կանոնախմբերից առաջինի վերնագրում. «Նորին կանոնք երրորդ Բարսեղի Կեսարու հայրապետին արարեալ, գլուխք ՀԴ,* զոր ոչ կայր ի բուն օրինակն, յետոյ գտեալ յայլում յօրինակի և աստ եդաք»[1] *(ընդգծումը մերն է— Վ. Հ.)։*

*Եթե* T *ձեռագրի վերոնշյալ հիշատակարանը չի ընդօրինակված մի ավելի հին ձեռագրից, նշանակում է այդ երեք կանոնախումբը Կանոնագրքում մուծել է հիշատակարանի հեղինակ Գրիգոր քահանան 1621 թ., որից և հիշյալ տեղեկությունները անցել են նշված ձեռագրերին։ Բոլոր դեպքերում այդ մուծումը չէր կարող կատարվել* XV *դարի երկրորդ կեսից վաղ։*

*Վերևում նշված երեք կանոնախմբերը, որոնք 15 ձեռագրերի ցանկերում չեն մտել, բայց յուն ձեռագրերի վերջում ավելացված են, №№ 7580 (*N*) և 3291 (*Ս*) ձեռագրերում արդեն մտել են նաև ցանկում, այդ պատճառով ցանկում նշված է ոչ թե 57 կանոնախմբի վերնագիր, ինչպես* A *ձեռագրում է, այլ 60։*

*Մնացած երկու ձեռագրերը՝ №№ 1779 (*ê*) և 3141 (*u*) սկզբից և վերջից ծերի են (կան ընկած թերթեր) և այդ պատճառով հնարավոր չեղավ պարզել, թե դրանք վերևում նշված ենթախմբերից որին են պատկանում։*

*Այսպիսով, եթե նկատի չունենանք վերջին երկու ձեռագրերը, ապա Ա խմբի մնացած ձեռագրերը բաժանվում են չորս ենթախմբի, որոնք առաջացման տեսամով ունեն հետևյալ պատկերը.*




*ԻԱ. Կանոնագրքի Բ խմբի ձեռագրերը թեև ունեն միևնույն կանոնախմբերը, բայց վերջիններիս հաջորդականությունը տարբեր է։ Այս՝ Բ խմբի ձեռագրերն իրենց հերթին բաժանվում են մի քանի ենթախմբերի, որոնց կանոնախմբերի քանակը և նրանց դասավորության տարբերությունը ավելին է, քան Ա խմբի ձեռագրերինը։*

*Առանձին ենթախումբ են կազմում №№ 656 (*l*) և 646 (*t*) ձեռագրերը, որոնցից կբերենք* l*-ի բովանդակությունը, ցույց տալու, թե Բ խմբի ձեռագրերում Կանոնագրքի կառուցվածքը ինչպիսին է և հետագայում կատարված ավելացումները այս խմբի մյուս ենթախմբերի ձեռագրերում ինչ հաջորդա-*

[1] T, էջ 342բ, հմմտ. նաև J, էջ 209ա, K, էջ 239ա, M, էջ 280ա, S, էջ 331բ, V, էջ 234ա, o, էջ 190ա։

կանությամբ են ընթանում։ Ահա այն «[Շ]արադրութիւն կանոնաց եղեալ այսչափ և այսչափ գլխոցն» վերնագրի տակ.

Ա. Կանոնք Առաքելականք գլուխք երեսուն և չորս։

Բ. Երկրորդ Առաքելականք գլուխք Ղ և Ե։

Գ. Կանոնք Թադէոսի առաքելոյ գլուխս ԼԳ։

Դ. Կանոնք Փիլիպոսի առաքելոյ գլուխս Ը։

Ե. Կանոնք Հարանցն հետևողաց գլուխս ԻԴ։

Զ. Կանոնք Անկիւրեայ գլուխս քսան։

Է. Կանոնք Նիկիայ սուրբ ժողովոյն գլուխս քսան։

Ը. Կանոնք երկրորդ Նիկիականք գլուխս ՃԺԴ։

Թ. Կանոնք սրբոյն Գրիգորի առաքելոյ Հայոց գլուխս երեսուն։

Ժ. Կանոնք սրբոյն Աթանասի գլուխս Զ և Ը։

ԺԱ. Կանոնք երանելոյն Մակարայ Երուսաղէմի գլուխ Թ։

ԺԲ. Կանոնք Կոստանդինուպօլսի ժողովոյն գլուխս Գ։

ԺԳ. Կանոնք երանելոյն Աստուածաբանի գլուխս Լ։

ԺԴ. Կանոնք սրբոյն Բարսղի առ Աքելիքոս գլուխս ԾԱ։

ԺԵ. Կանոնք Բ Բարսղի առ Թէոդորոս գլուխս Ա։

ԺԶ. Կանոնք Գ սրբոյն Բարսղի վասն պէսպէս և բիւրապատիկ ախտից, գլուխս ՄՀԲ։

ԺԷ. Կանոնք տեառն Եփրեմի գլուխս Ը։

ԺԸ. Կանոնք Ներսէսի կաթողիկոսի և Ներշապհոյ եպիսկոպոսի գլուխ Լ և Ը։

ԺԹ. Կանոնք Կեսարեայ գլուխք Ժ։

Ի. Կանոնք Նէոյկեսարեայ գլուխ Ի։

ԻԱ. Կանոնք Կանգրեայ գլուխք ԻԴ։

ԻԲ. Կանոնք Անտիոքայ գլուխք ԻԵ։

ԻԳ. Խոստովանութիւն Անտիոքայ գլուխ Ա։

ԻԴ. Կանոնք Լաւոդիկեայ գլուխք ՄԷ։

ԻԵ. Կանոնք Սարդիկեայ գլուխ ԻԱ։

ԻԶ. Կանոնք Եպիփանու գլուխ Ե։

ԻԷ. Կանոնք Եփեսոսի ժողովոյն գլուխք Զ։

ԻԸ. Կանոնք Կիւրղի Աղեքսանդրացւոյ գլուխ Ե։

ԻԹ. Կանոնք սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի գլուխք [Ծ]Ե։

Լ. Կանոնք միաբան Հայոց գլուխ Ի։

ԼԱ. Թուղթ Սեւանդեայ գլուխ ԺԳ։

ԼԲ. Կանոնք երկրորդ Անտիոքայ գլուխս Թ։

ԼԳ. Կանոնք Յոհաննու Մանդակունւոյ գլուխ Թ։

ԼԴ. Թուղթ Աբրահամու առ Վաչագան գլուխք Գ։

ԼԵ. Կանոնք վերջնոյ Սահակայ գլուխք ԺԵ։

ԼԶ. Կանոնք տեառն Յովհաննու Իմաստասիրի գլուխք ԼԲ։

ԼԷ. Կանոնք Սիոնի կաթողիկոսի գլուխք ԻԳ։

ԼԸ. Կանոնք Վաչագանայ Աղուանից արքայի գլուխ ԻԱ։

ԼԹ. Կանոնք Դըւնայ սուրբ ժողովոյն գլուխք ԺԲ։

Խ. Սրբոյն Եղիշէի կանոնաց գրոց գլուխք Ա։

Այս ցանկին համապատասխան էլ կանոնախմբերը դասավորված են բուն ձեռագրում։ Սակայն ցանկի ԻԸ վերնագրի՝ Կյուրեղ Աղեքսանդրացու կանո-

նախմբի ընդօրինակումով ձեռագիրն այնուհետև մնում է թերի, չընդօրինակվելու պատճառով։ Անշուշտ, եթե ընդօրինակությունը շարունակվեր, ապա մնացած կանոնախմբերը նույն հաջորդականությամբ կլինեին մինչև վերջ՝ Եղիշեի «Կանոնաց գիրք» (Վասն դիւահարաց) կանոնախումբը։ Ճիշտ նույն ձևով են նաև № 646 (t) ձեռագրի պարունակած կանոնախմբերը։

Բ ենթախմբից ունենք երեք ձեռագիր՝ №№ 8938 (l), 660 (o) և 3368 (h)։ Վերջին երկու ձեռագրերում սկզբից թերթեր ընկնելու պատճառով չի պահվել կանոնախմբերի բովանդակության ցանկը։ l ձեռագրի բովանդակության ցանկում նշված են Ա ենթախմբի it ձեռագրերի պարունակած Ա—Խ կանոնախմբերը։ Նույն հաջորդականությամբ էլ վերջիններս դասավորված են բուն ձեռագրում, սակայն դրանից հետո ավելացված են նոր կանոնախմբեր, որոնց վերնագրերը չեն նշված բովանդակության ցանկում։ Ահա այդ նորամուծ մասը ըստ l ձեռագրի[1].

[ԽԱ.] Նորին (իմա Եղիշէի— Վ. Հ.) վասն ուրացողաց[2]։

[ԽԲ.] Նորին վասն երեխայից։

[ԽԳ.] Յոհաննու Կոստանդինուպաւլսոյ հայրապետի։

[ԽԴ.] Նորին. սկս. «Զոր ինչ խնդրիցէք յանուն իմ ի հօրէ իմմէ»։

ԽԸ. Մեծի Ագաթանկեղոսի ի բանէն որ զՎայենէ։

ԽԹ. Երանելոյն Մեսրոպայ Հայոց վարդապետի։

Ծ. Սահմանք և կանոնք կարգի եկեղեցոյ սրբոյն Ներսէսի հայրապետի Հայոց[3]։

ԾԱ. Կանոնք Յովանու Մանդակունոյ Հայոց կաթողիկոսի գլուխ Է։

ԾԲ. Նորին Յովանու Մանդակունոյ կոչումն ապաշխարութեան։

ԾԳ. [Նորին] խոստովանութիւն քահանայի։

ԾԴ. Կանոնք երանելոյն Եպիփանու Կիպրացոյ եպիսկոպոսի մեծի և սուրբ գինոյ (sic) մարգարէի և նշանալգործի գլուխ Գ։

ԾԵ. Ի հարանց կանոնացն է։

ԾԶ. Կղեմայ Հռոմայ եպիսկոպոսին։

ԾԷ. Սրբոյն Դէոնէսիոսի Աթենացւոց եպիսկոպոսի բան Ա։

ԾԸ. Սրբոյն Դէոնէսիոսի Արիսպագացոյն յաղագս աստուածային բան երկրորդ։

---

[1] ho ձեռագրերում թեև կանոնախմբերի բովանդակության ցանկը ընկած է, բայց ձեռագրերում կանոնախմբերի հաջորդականությունը, ներառյալ այս նորամուծ մասը, համապատասխանում է l ձեռագրին։

[2] Ձեռագրում Դվինի ժողովի կանոնախումբը գրված է ԼԹ համարի տակ (էջ 197բ), սրան հաջորդող՝ (Եղիշէի) «Վասն դիւահարաց» կանոնախմբի համարը, որ պետք է լիներ Խ, չի նշված (էջ 201ա), այսպես համարներ չեն նշված շարունակություն կազմող առաջին չորս կանոնախմբերի։ Ագաթանգեղոսի կանոնախումբը համարակալված է ԽԸ։ Որտեղի՞ց կարող էր առաջ գալ ԽԸ և սրան հաջորդող 17 կանոնախմբերի համարակալումը մինչև ԿԵ։ Բանն այն է, որ Սահակ Պարթևի կանոնախումբը բաժանված է առանձին չորս ենթախմբերի, իսկ մի շարք ձեռագրերի ցանկում, օրինակ km, այդ ենթախմբերը նշված են որպես առանձին կանոնախմբեր, սրան ավելացրած Կանոնագրքում չմտած նույն հեղինակի «Իւր աւանդութեան» գրությունը։ Այսպիսով, Սահակ Պարթևի կանոնախումբը, որ ձեռագրերի մեծ մասի ցանկում մտել է մեկ վերնագրով, km ձեռագրերում՝ հինգ, այստեղից էլ այդ ձեռագրերի ցանկը չորս վերնագրով ավել է ստացվում։ Բանն այդպես է ընթացել նաև l ձեռագրում։ Ձեռագրում նշված համարակալումը նույնությամբ պահեցինք մինչև վերջ՝ ԿԵ համարը։

[3] h ձեռագրում նախ գրված է Ծ կանոնախումբը, ապա նախորդ՝ ԽԹ-ն էջ 199բ, 201ա։

ԺԹ. Կանոնք սուրբ ժողովոյն որ ի Թէոդուպօլիս, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք։

Ի. Հիպողիտեայ սրբոյ բան ի ծնունդն և ի մկրտութիւն Տեառն գլուխ Ա։

ԻԱ. Միլիտոսի եպիսկոպոսի Թուխա առ տոյ (sic) եպիսկոպոսիս գլուխ Ա։

ԻԲ. Մանուէլի գլուխ Ա։

ԻԳ. Ի Սոկրատայ գլուխ Ա։

ԻԴ. Նորին նմա։

ԻԵ. Կանոնք տեառն Սիմէոնի Աղուանից կաթողիկոսի (վերջից թերի)։

Այսպիսով, Ա ենթախմբի համեմատությամբ Բ-ում ավելացված են 22 մեծ ու փոքր կանոնախմբեր։

Գ ենթախմբի ձեռագրերն են՝ №№ 7615 (a), 8964 (c), 2676 (d), 654 (k), 2677 (m), 3544 (p), 3098 (s), 9513 (r)։ Այստեղ կանոնախմբերի հաջորդականությունը համընկնում է նախորդ երկու ենթախմբերի ունեցածին՝ Ա ենթախմբի Ա—Ժ կանոնախմբերը և Բ ենթախմբի ԺԱ—ԻԵ կանոնախմբերը նույնությամբ գտնում ենք այս ենթախմբի ձեռագրերում[1], բացի դրանից այս ենթախմբի ձեռագրերում կանոնախմբերը թե բովանդակության ցանկում և թե ձեռագրերում, երբեմն էլ առանձին-առանձին, շարունակվում են։ Այդ ցույց կտանք m ձեռագրի օրինակով.

ԻԶ. Նեքտառեայ Հռոմայ եպիսկոպոսի վասն լինակաց գլուխ Ա։

ԻԷ. Հարցումն Թէոդորոսի քահանայի առ երանելին Եպիփան, վասն քառասնօրդաց և այլոց պահոցն գլուխ Ա։

ԻԸ. Յոհաննու Երուսաղէմայ եպիսկոպոսի վասն լինակաց պահոց գլուխ Ա։

ԻԹ. Վասն ութ աւուր պահոց, որ յառաջ քան զյայտնութիւն՞ գլուխ Ա։

Լ. Կանոնք Ներսէսի Կլաեցոյն վասն ազգապղծութեան գլուխ Ա։

ԼԱ. Կանոնք զգուշաւոր ի խրատ քահանայից գլուխ ԺԲ։

---

[1] Կան ձեռագրեր, ուր պահվել են կանոնախմբերի բովանդակության ցանկը և կանոնախմբերը բուն ձեռագրում, օրինակ՝ m, սակայն կան ձեռագրեր, ուր չի պահվել կանոնախմբերի բովանդակության ցանկը, օրինակ՝ akps. կամ ցանկում կա, բայց ձեռագրում չեն ընդօրինակվել ցանկի երկրորդ մասում գտնվող վերնագրերի համապատասխան կանոնախմբերը, օրինակ՝ cd։ Ոչ մի ձեռագրի բովանդակության ցանկում չեն արտահայտվել պատմական բնույթի ունեցող այն մի քանի նյութերը, որոնք գտնվում են բուն ձեռագրում՝ մեծ մասամբ Մեսրոպի և Ներսեսի կանոնախմբերի միջև։ Այս ենթախմբի որոշ ձեռագրեր՝ cd, այդ նյութերը չունեն, կանոնախմբերը լրիվ չընդօրինակվելու պատճառով։ Այդ նյութերը գտնում ենք abefgkmpsq ձեռագրերում։ Այն կբերենք ըստ m ձեռագրի.

1. Եպիսկոպոսք Երուսաղէմի, որք յետոյ պատարագք (իմա պատրիարք— Վ. Հ., էջ 220բ—221ա)։

2. Կոստանդնուպօլսի եպիսկոպոսք, որք պապ և հայրապետք (էջ 221ա)։

3. Նիկիա ժողովոյն անուանք (էջ 221ա 226ա)։

4. Քահանապետք Հայոց Մեծաց (էջ 226ա—228բ)։

5. Եպիսկոպոսք Կամսարական տանն (էջ 228բ—229ա)։

Ի տարբերություն վերևում շարադրվածի՝ r ձեռագրում չեն պահվել առաջին երկու նյութերը, իսկ վերջին երեք նյութերը գտնվում են ոչ թե վերոնշյալ կանոնախմբերի շարքում, այլ Կանոնագրքի վերջում՝ «Վասն քահանայագործութեան կարգաց» կանոնախմբից (էջ 276ա—278բ) հետո, 278բ—284բ էջերում։

[2] Բուն ձեռագրում այս կանոնախումբը վերնագրված է. «Սեբ[եր]իանոս յՂուկայ աւետարանէն մեկնութենէ» (էջ 253բ)։

*ՀԲ. Կանոնք երկրորդ վասն զգուշութեամբ սպասաւորելոյ քահանայից սուրբ խորհրդոյն գլուխ ՃԼԲ։*

*ՀԳ. Եզնկայ Կողբացոյ Հայոց վարդապետի վասն պատրաստութեան հաղորդողոյ, գլուխ Ա։*

*ՀԴ. Նորին Եզնկայ բան երկրորդ գլուխ Զ։*

*ՀԵ. Բանք Անանիաի Հայոց վարդապետի վասն ոչ հաղորդելոյ զժողովրդականոն աւուր մեծի հինգշաբաթոյ, գլուխ Ա։*

*ՀԶ. Վասն որք ասեն անգոսնելի կիրք ի մարդեղութիւնն Քրիստոսի գլուխ Ա*[1]*։*

*ՀԷ. Ցաղագս նկարեալ պատկերաց գլուխ Ա։*

*ՀԸ. Վասն քահանայագործութեան կարգաց խրատ ի պատրաստութիւն գլուխ ԻԹ*[2]*։*

*Այսպիսով, այն 13 կանոնախմբերը, որոնք դուրս են մնացել նախապես կազմված բովանդակության ցանկից, բայց հետագայում մտել են Ի ենթախմբի բուն ձեռագրերում, Գ ենթախմբի ձեռագրերում մտել են և՛ բովանդակության ցանկում և՛ նույն հաջորդականությամբ էլ բուն ձեռագրերում։*

*№№ 8380 (*b*), 783 (*e*), 8006 (*f*), 5148 (*g*), 8236 (*q*) ձեռագրերը կազմում են մի այլ ենթախումբ՝ Դ։ Առաջին ենթախմբի ամբողջ կանոնախմբերը՝ Ա—Խ, նույն հերթականությամբ գտնում ենք այս ենթախմբում*[3]*. բացի դրանից, վերջինիս մեջ, 40-րդ կանոնախմբից հետո, կանոնախմբերը շարունակվում են, բայց ոչ Բ կամ Գ ենթախմբերի նման, այլ տարբեր։ Բերում ենք* e *ձեռագրի ունեցածը.*

*[Ա.] Նիկիոյ սուրբ ժողովոյն անուանքն են այսոքիկ*[4]*։*

*[Բ.] Եւ որք ի Կեսարիա ժողովեցան։*

*[Գ.] Յետ մատենի ժամանակագրութեան թագաւոր տէրանց աշխարհիս*

---

*[1] Բուն ձեռագրում այս կանոնախումբը վերնագրված է. «Այլուստ ժողովածու իմաստախոհ արանց» (էջ 278բ)։*

*[2] Թեև ցանկում չկա, բայց ձեռագրում ուրիշներ ավելացրել են նոր կանոնախմբեր. 1. Մեծի Ներսէսի Հայոց պատրիարգի և երկրորդ լուսաւորչի արարեալ ընթեռնլով մեր խրատ ատրճանաց ազգականութեան. 2. Յաղագս պսակի ամուսնացելոց Յակոբ վարդապետի Ղ[ր]իմեցւոյ արարեալ. 3. Վասն որ ասեն թէ հեշտ ցանկութեամբ լինին մի մարմին այր և կին (էջ 284բ—305ա)։*

*Թեև r ձեռագիրը այս ենթախմբի մեջ նշեցինք, բայց ունի մի փոքր առանձնահատկություն՝ կանոնախմբերի բովանդակության ցանկում նշված են միայն Ա—Խ վերնագրերը՝ որ գտնում ենք Ա ենթախմբի ձեռագրերում, սակայն բուն ձեռագրում Ա—Խ կանոնախմբերից բացի գտնում ենք այն բոլոր կանոնախմբերը, որ վերևում բերեցինք ըստ ш ձեռագրի։ r ձեռագրում Կանոնագիրքը վերջանում է պսակի մասին Ներսես Կլայեցու, Հակոբ Ղրիմեցու և այլոց գործերով (էջ 285ա—297բ), որ չենք գտնում այս ենթախմբի մյուս ձեռագրերում։ Իսկ a ձեռագրում այս՝ ՀԸ կանոնախմբից հետո գալիս են «Ամենիմաստ Թագաւորացն Հռովմայեցւոց Աւրինագրութիւն» և նման այլ նյութեր (էջ 262ա—286բ, վերջից թերի)։*

*[3] Այն, ինչ նշված է բովանդակության ցանկում, նույն հաջորդականությամբ էլ գնում է բուն ձեռագրում, միայն երկու շեղումով՝ 1. բովանդակության ցանկում Փիլիպպոս, Թադեոս և 2. Մակար, Աթանաս, իսկ բուն ձեռագրում՝ 1. Թադեոս, Փիլիպոս 2. Աթանաս, Մակար հաջորդականությամբ։*

*[4] Իմա՝ Նիկիայի ժողովի մասնակիցների ցուցակը։ Սկսած վերջինից, ձեռագրում բերված նյութերը չեն համարակալված, դրանք նշել ենք մենք։*

*արանց Արշակունեաց (սկ. «Կամիմ յիշատակել զսահման Հայաստանեաց քահանայապետաց սրբոցն արանցն Աստուծոյ»)։*

*[Դ.] Ի սրբոյն Գրիգորէ Բագրեան և Արշակունիք միտ (sic) եպիսկոպոսք միհակ կարգեալ էին։*

*[Ե.] Եպիսկոպոս Երուսաղէմի որոյ եառոյ (sic) պատրիա[ր]գք եղեն։*

*[Զ.] Կոստանդիանուպօլսի եպիսկոպոսի (sic), որք հայրապետք[1]։*

*ԽԱ. Թուխտ Յակոբայ տեառնեղբօրն առ Կոստանդիանոս։*

*ԽԲ. Կանոնք երկրորդ Եպիփանու գլուխ Գ։*

*ԽԳ. Կանոնք Աքաղտնգեղա (sic) գլուխ Ա։*

*ԽԴ. Կանոնք Մեսրովպայ վարդապետի Ա։*

*ԽԵ. Յիշատակարան Յոհաննիսի Իմաստասիրի։*

*ԽԶ. Աւանդութիւն Հրէից վասն ողորմութեան[2]։*

*Այս ենթախմբի ձեռագրերից միայն Ե-ն է, որ չունի «Աւանդութիւն Հրէից վասն ողորմութեան» կանոնախումբը և դրա փոխարեն նշված է «Յաղագս ազգակցութեան և թուով շարադրեալ այսպէս» (Հակոբ Ղրիմեցի)[3]։*

*Սակայն հետաքրքիրն այն է, որ մեր ուսումնասիրած և ոչ մի ձեռագրում չենք գտնում Կանոնագրքի կազմվելու մասին Հովհաննես Օձնեցու գրած հիշատակարանը, բացի այս ենթախմբի հինգ ձեռագրերից[4]։*

*Այս չորս ենթախմբերի բովանդակության ցանկերի և բուն ձեռագրերում դասակարգված կանոնախմբերի ուշադիր և մանրամասն քննությունը հնարավորություն տվեց պարզելու այդ ենթախմբերի առաջացման հետևյալ սխեման.*

---

*[1] Պատմական այս մի քանի նյութերը (Ա—Զ) չեն արձանագրված ձեռագրերի կանոնախմբերի բովանդակության ցանկում, մինչդեռ վերջինում նշված ԽԱ—ԽԶ կանոնախմբերը և հով. Օձնեցու հիշատակարանը բուն ձեռագրում գրված են վերևում նշված նյութերից հետո, դարձյալ առանց համարակալման։*

*[2] Այս մեջբերումը կատարված է ըստ կանոնախմբերի բովանդակության ցանկի, այստեղ կնշենք, թե այդ վերնագրերից յուրաքանչյուրը բուն ձեռագրում ինչ վերնագրով է պահվել.*

*Ա. Թուխտ զոր առաքեաց Յակոբոս եպիսկոպոս Երուսաղէմի առ Կոդրատոս։*

*Բ. Գիր կանոնական սրբոյն Եպիփանու։*

*Գ. Մեծին Ագաղանգեղոսի ի բանէն որ ղԿայեն է։*

*Դ. Երանելոյն Մեսրոպայ Հայոց վարդապետի ասացեալ։*

*Ե. Յոհաննիսի Իմաստնասիրի Հայոց կաթողիկոսի յիշատակարան։*

*Զ. Աւանդութիւն Հրէիցն վասն ողորմութեան։*

*Է. Յոհաննու Մանդակունեցուն է ասացեալ (Կանոնագրքում եղածը, վերջից թերի) ցանկում չի պահվել (տես ձեռագրի էջ 190ա—198ա)։ Հմմտ. bfgq ձեռագրերը։*

*[3] Ի դեպ, այս ենթախմբի b ձեռագիրը ունի կանոնախմբերի երկու ցանկ. առաջինը՝ 1բ—2բ էջերում, երկրորդը՝ 3ա—4ա էջերում։ Դրանց մեջ եղած տարբերությունը աննշան է և վերաբերում է մի երկու վերնագրերի ետ ու առաջ գրված լինելուն, օրինակ՝ Մակար, Աթանաս, թե Աթանաս, Մակար։ Միակ կարևորն այն է, որ առաջին ցանկում տեղ են գտել նաև բուն ձեռագրում եղած այն նյութերը, որոնք նշեցինք վերևում՝ Նիկիայի ժողովի մասնակիցների ցուցակը և հաջորդ հինգ նյութերը։*

*[4] q ձեռագրի վերջից թերթեր ընկնելու պատճառով նշված հիշատակարանը կորել է, բայց որ այն եղել է ձեռագրում, երևում է բովանդակության ցանկում եղած նշումից (էջ 2բ)։*




Այն հանգամանքը, որ այս չորս ենթախմբերի ձեռագրերում Ա—Խ կանոնախմբերը և՛ բովանդակության ցանկերում և՛ բուն ձեռագրերում նույն հաջորդականությամբ կրկնվում են, մեզ ենթադրել է տալիս, որ դրանք բոլորն էլ սկիզբ են առել միևնույն հնագույն ձեռագրի որևէ մի տարբերակից, սակայն, ժամանակի ընթացքում ընդօրինակվելով և Կանոնագրքին նոր կանոնախմբեր ավելացվելով՝ դրանք միայն շարունակության մեջ շեղվել են միմյանցից։

ԻԲ. Այժմ այն մասին, թե ինչ աղերս կարող է լինել Կանոնագրքի Ա և Բ խմբերի միջև։ Ա խմբի բոլոր ձեռագրերի[1] թե՛ բովանդակության ցանկերի և թե՛ բուն ձեռագրերի Ա—Խ կանոնախմբերը գտնում ենք Բ խմբի բոլոր չորս ենթախմբերում, թեև տարբեր դասակարգմամբ, իսկ դա նշանակում է, որ Հովհաննես Օձնեցու Կանոնագիրքը ժամանակի ընթացքում, այլ կանոնախմբերի ավելացմամբ, դարձել է 40 կանոնախումբ ունեցող ժողովածու. և դրանից հետո միայն X դարի 90-ական թվականներին է վերափոխվել նրա կառուցվածքը և ստեղծվել՝ կանոնագիրք-ձեռագրերի Բ խումբը[2]։

Այսպիսով, վերջինիս առաջին ենթախումբը կարելի է համարել Կանոնագրքի վերակազմված բնագրի հնագույն որևէ տարբերակի ընդօրինակություն, որը կանոնախմբերի դասավորության առանձնահատկությամբ ավելի հին է, քան 1098 թ. ընդօրինակված A ձեռագիրը։ Այդ երևում է նրանից, որ նշված ենթախմբի կանոնախմբերի ցանկում չենք գտնում A ձեռագրի

[1] Նկատի չունենք թերի ձեռագրերը։

[2] Կանոնագիրք-ձեռագրերի Բ խմբում սկզբնապես պետք է լինեին 40 կանոնախումբ, իսկ դրանից հետո եղածները ավելացվել են հետագայում։ Ա և Բ խմբի ձեռագրերի աղերսի առնչությամբ հետաքրքրությունից զուրկ չեն նաև հետևյալ փաստերը. Նախ՝ Ա խմբի A ձեռագրի կանոնախմբերի ցանկի վերնագիրը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոցս» ձևով գտնում ենք Բ խմբի ilrt ձեռագրերում, երկրորդ՝ առարկայական ցանկը ilrt ձեռագրերում լինելով անխորագիր, ինչպես A-ում, զարմանալի կերպով համապատասխանում է A-ին, երկուսի մոտ էլ նույն 288 վերնագրերը (աննշան մի քանի շեղումներով նաև befghoq ձեռագրերում)։ it ձեռագրերի առարկայական ցանկը ավելի համապատասխանում է A-ին քան իր՝ Բ խմբի befghloqr ձեռագրերի ունեցածին, քանի որ այն վերնագրերը, որ չենք գտնում b և նրան հարող ձեռագրերում, հանդիպում ենք it և A ձեռագրերի առարկայական ցանկերում։ A և it ձեռագրերի առարկայական ցանկերի վերնագրերի դիմաց նշված հոդվածների ընդհանուր կարգահամարները, հասկանալի պատճառով, տարբեր են, որովհետև դրանք պատկանում են տարբեր խմբերի։ A և it ձեռագրերի շոշափելի կողմերի վրա հարկ համարեցինք կանգ առնել, որովհետև it ձեռագրերը, ինչպես նշեցինք վերևում, հանդիսանում են Բ խմբի ձեռագրերի հնագույն որևէ օրինակի մի տարբերակից վերցված բնագրեր։

40-րդ (ընդգ. ԼԸ) կանոնախմբից հետո ավելացված կանոնախմբերից և ոչ մեկը։

ԺԳ. Այժմ տեսնենք, թե վերևում նշված երկու՝ Ա և Բ խումբ ձեռագրերը, միևնույն ընթերցվածների տեսակետից, ինչպիսի աղերս ունեն միմյանց նկատմամբ։ Եթե նկատի ունենանք միանման ընթերցումները և չիքերը, ապա Ա խմբի ձեռագրերը հիմնականում կարելի է բաժանել երկու ենթախմբի՝ ABCDEFGHUê և IJKLMNOPQRSTVXYZWû։ Օրինակ՝ այս երկու ենթախմբերում Կղեմեսի կանոնախմբի Ի-Լ հոդվածների տարբեր լինելը կարող է հանդիսանալ մեր ասածի ապացույցը։ Սակայն այդ երկու ենթախմբերն էլ, իրենց հերթին, բաժանվում են միմյանց ավելի մոտ ձեռագրերի, օրինակ՝ ABUė որպես կանոն տալիս են նույն ընթերցումները և չիքերը, CDGH-ը՝ նույնը. երկրորդ ենթախմբից՝ IJNOPVW՝ նույնը, KLMQRSTXYZ՝ նույնը։ Սակայն, պատահում է, որ միևնույն ենթախմբի առանձին ձեռագրեր, երբեմն շեղվում են։ Այդտեղ նկատում ենք տվյալ ձեռագրի կամ ձեռագրերի առանձնահատկությունները, երբ յուրաքանչյուր ընդօրինակության ժամանակ թույլ են տրվել սխալներ, որոնք անցել են հետագայում կատարված ընդօրինակություններին։ Այս տեսանկյունից նայելիս, վերջին ձեռագրերը բաժանվում են ավելի մանր ենթախմբերի, օրինակ՝ KLMQST, NOW, IJ, RXY, իսկ û ձեռագրում չիքերը անչափ շատ են. դա կարող է բացատրվել ոչ միայն գրչի անուշադրությամբ, այլև նրանով, որ ընդօրինակությունը անհաջող և սխալաշատ ձեռագրից է կատարվել։

Ձեռագրերի Բ խումբը միևնույն սկզբունքով բաժանվում է հետևյալ ենթախմբերի՝ acd, belgq. ավելի մոտ են՝ bq և eg ձեռագրերը. hilort ենթախմբում ավելի մոտ են hlo և irt ձեռագրերը. kmps-ում ավելի մոտ են km և ps ձեռագրերը։ Եթե նկատի ունենանք, որ միմյանց մոտ գտնվող kmps և hlo ենթախմբերի մեջ ամենահին ձեռագրերն են k-ն՝ 1671 թ. և h-ն՝ 1639 թ., թերևս ենթադրելի է, որ mps ձեռագրերը ընդօրինակվել են k-ից, իսկ lo-ն՝ h-ից։

Անշուշտ ուշագրավ է այն հանգամանքը, որ երկու՝ Ա և Բ տարբեր խմբերի առանձին ձեռագրեր, տալիս են միևնույն ընթերցվածները, օրինակ՝ Iehlor ձեռագրերը ունեն «միամտեալ» ընթերցումը, փոխանակ «մի ամ մտեալ» (էջ 126, տող 7) կամ NOWbefgq ձեռագրերը՝ «մեռանին կանայք արանց մինչև» փոխանակ «մեռանին մինչև» (էջ 107, տող 11) և կամ OWbq ձեռագրերը՝ «ամօթով» փոխանակ «անութով» (էջ 93, տող 3)։ Ըստ երևույթին, երբեմն Ա խմբի որևէ ձեռագիր ընդօրինակելիս, ընթերցումները ստուգելու, թե ճշտելու նպատակով, օգտագործել են Բ խմբի որևէ ձեռագիր և կամ ընդհակառակը։ Սակայն, հնարավոր է, որ ընդօրինակության համար միաժամանակ օգտագործել են նշված երկու տարբեր խմբերի ձեռագրերից։ Այդ տեսակետից չափազանց հետաքրքիր է F ձեռագրի հիշատակարանը, որը գրիչը թողել է կանոնագիրք-ձեռագիրը ընդօրինակելուց հետո. «Ո՞վ ընթերցօղք եւ լսողք, յորժամ ընթեռնուք՝ միտ դիք իմոյ բանիս, վասն օրինակի գրչիս. նախ և առաջին պատճառն՝ օրինակն Բ էր. երկրորդ՝ Ա հին, Ա նոր. երրորդ՝ նորին բնաւ չիք ստուգութիւն. չորրորդ՝ հինն բնաւ չիք սղալութիւն... Ես այնպէս վարանէի, կսկծայի արտասուէի, բայց մարդոյ ոչ յայտնէի։ Ես խմում անձին գլորէի (sic) և յԱստուած ապաւին[էի]. Նոր աւրինակն ձախ կողմս դնէի ի դիրս հայէի, շատ սխալ ի միջի տեսան|է|ի, յերեսս դար-

*ծուցանէի՝ դէպ չՍստուած ակնարկէի, հին օրինակն աջակողմս դնէի ստուգութիւն ի միջի տեսանէի սրտակաթ լինէի, բայց...[1] տեսանէի ուրինակին լեռս դառնալի սիր[տս] խոցուով լցուէի, բայց հոգին սուրբ աղաչէի...»[2]։ Դժբախտաբար չգիտենք, թե գրչի ձեռքի տակ ինչ ձեռագրեր են եղել, գուցե երկուսն էլ պատկանել են միևնույն խմբին և սակայն նույնքան հնարավոր է՝ տարբեր խմբերի։ Համենայն դեպս, ուշագրավն այն է, որ երբեմն ձեռագրերից ընդօրինակություն կատարելիս միայն մեկ ձեռագիր չեն վերցրել, այլ երկուսը, որպեսզի առանձին դժվարընթեռնելի կամ անհասկանալի բառեր ստուգեն մեկը մյուսով և այդ երկու ձեռագրերից վերցված առանձին բառեր անցկացնեն ընդօրինակվող ձեռագրերում։ Նման բան, ըստ երևույթին, պատահել է վերևում, որպես օրինակ նշված երկու տարբեր խմբերի միևնույն ընթերցանությունը ունեցող ձեռագրերի հետ։*

*ԻԴ. Այն հարցը, թե Հովհաննես Օձնեցու կազմած Կանոնագիրքը, կանոնախմբերի կազմության տեսակետից, այս երկու խմբերից որի՞ մեջ է համեմատաբար անաղարտ պահվել, նոր չէ, որ առաջ է քաշվում։*

*Հայագիտության մեջ այդ հարցին նվիրված ամբողջական աշխատություն չկա։ Որոշ բանասերներ, նայած թե ձեռքի տակ ինչպիսի ձեռագիր են ունեցել (Ա թե Բ խմբին պատկանող), ըստ այնմ էլ, կարծիք են հայտնել. օրինակ՝ Հ. Տաշյանը Վիեննայի Մխիթարյան Մատենադարանի № 256 ձեռագրի (Բ խմբին պատկանող) մասին գրում է. «Մատենան է Կանոնագիրք լիակատար, աւելի հաւատարիմ Օձնեցւոյ խմբագրութեանն»[3]։ Մ. Օրմանյանը ավելի հեռուն է գնում, նույնիսկ որոշելով Հովհաննես Օձնեցու Կանոնագրքի մեջ մտած կանոնախմբերի քանակը։ Նա օգտվելով Սկյուտարի Ս. Խաչ եկեղեցում պահվող մի կանոնագիրք-ձեռագրից, որը նույնպես պատկանում է Բ խմբին, գրում է. «Օձնեցիին հարազատ գործը պէտք է փակենք ԼԷ գլուխին (իմա կանոնախումբ— Վ. Հ.) և 1207-րդ կանոնին, որ կը մակագրուի՝ Կանոնք Տեառն Յովհաննիսի Իմաստասիրի Հայոց կաթողիկոսի»[4]։*

*Եվ այս 37 կանոնախմբերը[5] նա բաժանում է հետևյալ կերպ.*

*1. Ընդհանուր եկեղեցական ավանդական կանոններ՝ չորս կանոնախումբ։*

*2. Ազգային-եկեղեցական ավանդական կանոններ՝ երկու կանոնախումբ։*

*3. Տիեզերական ժողովների կանոններ՝ հինգ կանոնախումբ։*

*4. Մասնավոր (տեղական) ժողովների կանոններ՝ ինը կանոնախումբ։*

*5. Սուրբ հայրերի կանոններ՝ ինը կանոնախումբ։*

*6. Ազգային ժողովների և հայրապետների կանոններ՝ ինը կանոնախումբ։ Ընդամենը՝ 38։*

*Այսպիսով՝ վերոհիշյալ բանասերները ձեռքի տակ ունենալով մեր կող-*

---

[1] *Այստեղ մի բառ եղծված է։*

[2] *էջ 222բ, 224բ։ Ֆ ձեռագիրը նույնպես ընդօրինակված է երկու ձեռագրից, ըստ գրչի վկայության. «...ընկլիզն արարի յերկուց ընտիր օրինակաց» (էջ 299բ)։ Մի այլ օրինակ «գրեցի... բազմեռանդ գիրքս աղօթից, բազում աշխատութեամբ Բ և Գ զաղափարել օրինակելով...» (տես Հ. Թօփճյան, Ցուցակ ժողովածուաց Գաբեան Խաչիկ վարդապետի, մասն Բ, Վաղարշապատ, 1900, էջ 29)։*

[3] *Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վիեննա, 1895, էջ 649։*

[4] *Ազգապատում, հտ. Ա, էջ 832։*

[5] *Սակայն, ինչպես հաջորդ տողերից երևում է, կանոնախմբերի թիվը ոչ թէ 37 է, այլ 38։*

մից նշված Բ խմբի որևէ ձեռագիր, վերջինիս սկզբի մասը՝ 1—37-րդ կանոնախմբերը, համարել են Հովհաննես Օձնեցու կազմած Կանոնագիրքը։ Սակայն, երկարատև որոնումները և մեր ձեռքի տակ եղած մի քանի տասնյակ ձեռագրերի բովանդակության ուշադիր և մանրազնին ուսումնասիրությունը մեզ բերեցին այն հաստատ եզրակացության, որ Հովհաննես Օձնեցու Կանոնագիրքը պահվել է Ա խմբի ձեռագրերում և նրա կազմած ժողովածուն պետք է ունեցած լինի 24 կանոնախումբ՝ Առաքելական (Ա) կանոնախմբից մինչև իր՝ Հովհաննես Օձնեցու կանոնախումբը (ԻԴ)։ Այդ նույն տեսակետը ավելի վաղ, ինչպես պարզեցինք հետագայում, ունեցել են նաև Ս. Տիգրանյանը[1] և Ն. Ակինյանը[2]։ Այդ պատճառով էլ Կանոնագրքի սույն հրատարակության հիմքում դրեցինք Ա խմբի ամենահնագույն A ձեռագիրը, նպատակ ունենալով ներկա հատորում Կանոնագիրքը հրատարակել այնպիսի բովանդակությամբ, ինչպիսին եղած պետք է լիներ Հովհաննես Օձնեցու ժամանակ։

ԻԸ. Նյութերի ընտրության տեսակետից Հովհաննես Օձնեցու կազմած Կանոնագիրքը բովանդակում է ոչ-հայկական՝ թարգմանական, և հայկական՝ ինքնուրույն իրավաբանական նյութեր։ Ոչ-հայկական՝ թարգմանական նյութերից Կանոնագրքում գտնվում են առաքյալներին վերագրված երեք կանոնախմբեր՝ Առաքելական, Կղեմեսի և «Հարանց հետևողաց»։ Վերջինիս թարգմանության լինելն առայժմ երկբայելի է։ Այն թերևս ստեղծված լինի հայ եկեղեցու ոլորտում, Օձնեցուց շատ առաջ։ Թարգմանական մյուս նյութերից պետք է նշել տիեզերական երեք ժողովների՝ Նիկիայի, Կ. Պոլսի (Ա) և Եփեսոսի որոշումները, տեղական վեց ժողովների՝ Անկյուրիայի, Նեոկեսարիայի, Անտիոքի, Գանգրայի, Լավոդիկեի և Սարդիկեի ժողովների կանոնախմբերը։ Սրան պետք է ավելացնել նաև Կեսարիայի ժողովի կանոնախումբը, որի՝ Կանոնագրքում գտնվող բնագրի ինքնությունը վիճելի է. վերջապես եկեղեցական հայրերից երեքի՝ Աթանաս Աղեքսանդրացու, Բարսեղ Կեսարացու և Նեմեսիոսի կանոնախմբերը, ընդամենը 16 կանոնախումբ։ Հայկական՝ ինքնուրույն նյութերից պետք է նշել Շահապիվանի, Դվինի երկու ժողովների որոշումները և հայ եկեղեցու նշանավոր գործիչների՝ Գրիգոր Լուսավորչի, Սահակ Պարթևի, Հովհան Մանդակունու, Աբրահամ Մամիկոնեից եպիսկոպոսի և Սահակ Ձորոփորեցու կանոնախմբերը, ընդամենը՝ 8 կանոնախումբ։ Այսպիսով, Կանոնագրքի Հովհաննես Օձնեցու կազմած ժողովածուում գտնվում են 24 կանոնախմբեր։ Այս նյութերը աննշան բացառությամբ դասավորված են ժամանակագրական կարգով՝ նախ ոչ-հայկական՝ թարգմանական նյութերը, ապա հայկական՝ ինքնուրույն։

ԻԶ. Մեզ հասած կանոնագիրք-ձեռագրերում վերնագիր չի պահվել, թեև հայագիտության մեջ, ինչպես նշեցինք վերևում, այն հայտնի է Կանոնագիրք կամ Կանոնդիրք անունով։ Գրիչները, որոնք ընդօրինակել են կանոնագիրք-ձեռագիրը, իրենց թողած հիշատակարաններում կոչում են հենց այդպես՝

---

[1] Ս. Տիգրանյան, Հայոց իրավունքի պատմություն, Երևան, 1923, (մեքենագրված, ձեռագրի իրավունքով), էջ 139—143, 146—147։

[2] Ն. Ակինյան, Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի Հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց Ցաղագս կարգաց եկեղեցւոյ, Վիեննա, 1939, էջ 108։ Տես նաև Խ. Սամուելյան, Հին հայ իրավունքի պատմությունը, հտ. 1, էջ 48։

Կանոնգիրք կամ այլ անուններով, օրինակ՝ «...լիշատակ է Կանոնգիրքս...»[1], «... մեղապարտ գրող կանոնացս...»[2], «... յաւարտ հասանել այս սուրբ գրոց, որ կոչի կանոնք...»[3], «գրեցաւ կանոնական գիրքս»[4]։

Կանոնագրքի սկզբում դրված է նրա բովանդակությունը, ուր նշված են կանոնախմբերի վերնագրերը։ Այնուհետև հաջորդում է առարկայական ցանկը[5], որը ցույց է տալիս, թե Կանոնագրքում ինչպիսի հարցերի մասին կարող ենք տեղեկություններ գտնել, ասենք՝ ամուսնալուծության, կամա թե ակամա սպանությունների մասին և այլն։

Յուրաքանչյուր կանոնախումբ բաժանված է առանձին հոդվածների՝ կանոնների, համապատասխան համարակալմամբ, ասենք՝ Առաքելական (Ա) կանոնախումբը ունի 34 հոդված, ապա հոդվածների համարակալումը տրված է 1—ից մինչև 34 (Ա—ԼԴ)։ Կղեմեսինը՝ 85 հոդված, ապա հոդվածների համարակալումը տրված է 1—ից մինչև 85 (Ա—ՁԵ), և այլն։ Բացի յուրաքանչյուր կանոնախմբի վերևում նշված մասնավոր համարակալումից, եթե կարելի է այդպես ասել, առաջին կանոնախմբի հոդվածներից մինչև վերջին կանոնախմբի հոդվածները, մասնավոր համարակալման զուգահեռ գրված է յուրաքանչյուր հոդվածի ընդհանուր հերթական համարակալումը։

Կանոնագրքի յուրաքանչյուր կանոնախմբի սկզբում գտնվում են տվյալ կանոնախմբերի հոդվածների բովանդակությունն արտահայտող վերնագրերի ցանկեր, որոնց վերնագրերի հերթական համարակալումը համապատասխանում է տվյալ կանոնախմբի հոդվածների մասնավոր համարակալմանը։

Կանոնագիրք-ձեռագրերում առարկայական ցանկը մեծ մասամբ հաջորդում է կանոնախմբերի ցանկին՝ «Ցանկ է միահամուռ կանոնիս» վերնագրով։ Կան նաև այնպիսի ձեռագրեր, որոնք չունեն այդ վերնագիրը, օրինակ՝ A. կամ ունեն որևէ տարբերություն, օրինակ՝ «Ցանկ է կանոնիս» (Ո, էջ 1ա), «Ցանկ է միահամուռ կանոնքիս» (L, էջ 2ա), և այլն։ Ավելի հետաքրքիր է m ձեռագրում պահված վերնագիրը. «Յրուացանկ է սրբոց կանոնացս»[6]։ Առարկայական ցանկը արված է գործնական նկատառումներով, որպեսզի հետաքրքրության առարկա հանդիսացող որևէ հոդված կարողանան դյուրությամբ գտնել. դիցուք՝ եթե մեկին անհրաժեշտ է իմանալ, թե գողության մասին Կանոնագրքում ինչ հոդվածներ կան, նա կդիմի այդ ցանկին և կհետևի խնդրո առարկա հանդիսացող վերնագրի դիմաց դրված հոդվածների ընդհանուր համարներին և կարիք չի ունենա ամեն անգամ Կանոնագիրքը ծայրից ծայր կարդալու։

Մեր օգտագործած և՛ Ա խմբի և՛ Բ խմբի ձեռագրերում առարկայական ցանկերը միանման չեն. ժամանակի ընթացքում, Կանոնագրքի օգտագործման գործնական անհրաժեշտությունից ելնելով, այն ենթարկել են փոփոխության՝ մերթ ընդարձակել առարկայական ցանկը՝ շերտավորելով առանձին

---

[1] № 3097, էջ 335ա, հմմտ. №№ 3291, էջ 471ա, 8938, էջ 495բ, 5148, էջ 170ա, 2677, էջ 305բ, 8006, I պահպանակ, էջ 1ա, 646, էջ 101ա, 9298, էջ 310ա։

[2] № 783, էջ 68ա. հմմտ. №№ 2677, էջ 305ա, 778, էջ 291ա։

[3] № 4403, էջ 283ա, 4631, էջ 291ա, 5894, էջ 299ա, 8380, էջ 264բ։

[4] № 783, էջ 200բ։

[5] Այս տերմինը գործածում ենք ժամանակակից իմաստով։

[6] Էջ 3բ։

հոդվածների բովանդակությունը, մերթ այդ ցանկերը կազմել այբբենական կարգով՝ փնտրածը ավելի շուտ գտնելու համար[1]:

Ա խմբի ինը ձեռագրերում՝ DGHNRUWeû չի պահվել առարկայական ցանկը, ձեռագրից թերթեր ընկնելու պատճառով: Մնացած ձեռագրերը ըստ առարկայական ցանկի բաժանվում են հետևյալ ենթախմբերի. ա. A. բ. BCEF. գ. ծ. դ. IJKLMOPQSTVXYZ: Բ խմբից առարկայական ցանկ չունեն kops ձեռագրերը[2], ձեռագրերից թերթեր ընկնելու պատճառով. մնացածները

---

[1] ո ձեռագրի առարկայական ցանկի վերնագրում կազմողը այսպես էլ գրում է. «Ցանկ կանոնիս ստուգաբանեալ ճշգրտապէս վասն դիւրագոյն գտանելոյ հոգևոր դատաստանաց» (էջ 1ա, հմմտ. էջ 291բ): Տես նաև h ձեռագրում, էջ 293ա: Նույնիսկ երկու ձեռագրերում (№№ 3281, 8444), առանց կանոնագրքի, պահվել է միայն առարկայական ցանկը, որ կազմել է Հակոբ Շամախեցին 1731 թ.: Այս ցանկն ունի ներածական (№№ 3281, էջ 103աբ, 8444, էջ 399ա—400ա) հետևյալ վերնագրով. «Նախադրութիւն եղիցի սիոփնական հաւաքմնասիրացդ մանկանց՝ վասն բոլոր ցանկիս կանոնականաց մատենիցս» (3281, էջ 103ա): Ներածականում հեղինակը գրում է. «Թէպէտ գոյր սա յօրինեցեալ յաստուածահաճոյից որանց ի վաղնջոց ժամանակաց, սակայն ոչ էր կարգաւորեալ և պարզեալ այբուբենիւք, այլ էր խառն ի խուռն, նաև համարն միենոյն էր ամենայն տանց կանոնաց, զի ի սկզբանէ գրքին մինչ ցվախճան նորին հասարակապէս ամենայն կանոնք վարէին (բն. վայէին) այնու համարով, որպէս տեսեալ իսկ էք. Նմին իրի միենոյն ցանգ ոչ լինէր պիտանացու ամենից կանոնականաց գրոց, այլ հարկ էր զի իւրաքանչիւր կանոնական գիրք զցանգ իւր ունիցէր ըստ շաւղի և ըստ որքանութեան իւրում» (№ 3281, էջ 103ա): Այստեղ Հակոբ Շամախեցին նկատի ունի յուրաքանչյուր կանոնախմբի սկզբում դրված Հովհաննես Օձնեցու կազմած ցանկերը: Այնուհետև. «բայց սակայն և այնու ոչ էր լինելի անսխալ, վասն զի թէպէտ լինէր զի մոռացմամբ, ի տեղի մետասան համարին գրիւր երկոտասան, յայնժամ երկոտասանն լինէր երեքտասան: Եւ այսպէս ամենայն հետևեալքն թիւքն մինչև ի վախճան գրքին, որոց պատճառն էր հասարակութիւն համարին, ուստի կարի զզուութիւնս և զաշխատ[ա]նս կրէին ըստ ինձ շամբիշք և խազակերթք ոմանք, ի զիւտս բանից իւրեանց: Այսր աղագաւ և ես հարկաւորեցեալ յիմոցս տկար մտաց, հաւաքեցի զսա ի չորս այբուբենից, և մանաւանդ զհասարակութիւն համարին յառաջացուցի, զի իւրաքանչիւր կանօնն իւրով առանձնակեաւ համարովն վարեսցի: Այլև ամենայն կանոնական գրոց անսխալ պիտոյասցի, զի ի ձեռն այսմ այբուբենի, շարագրութեանս և յառկութեան համարիս դիւրութեամբ և ըշտապով գտցեն զհայցելիսն իւրեանց՝ խնդրողքն բանից» (№ 3281, էջ 103ա): Ահա թե ինչու Հակոբ Շամախեցին կազմել է այս ցանկը: Ներածությունից հետո տրվում է բուն ցանկը (№№ 3281, էջ 104ա—111ա, 8444, էջ 401ա—418բ)՝ «Ցանկ բոլոր կանոնաց գրոց ի չորս այբուբենից հաւաքեցեալ և ոչ թայց աշխատանաց ի Յակոբայ դիտնական և առատիմաստ վարդապետէ Շամախեցւոյ» (էջ 104ա) վերտառությամբ (№ 8444 ձեռագրում «ի Յակոբայ դիտնական և առատիմաստ վարդապետէ Շամախեցւոյ» հատվածը չի պահվել, էջ 401ա): Ցանկն այբբենական է Ա-ից մինչև Օ, օրինակ, «Ազապացն որ մասնականաւ է՝ Ա. Սահ. խաւ Ազապս հանգուցելոց որք անգոսնեն՝ Գանգ. ժա. Նիկ. ծբ. Ի. Բարսղի ճզզ, ճզէ, ճզը, ճզթ». (էջ 104ա) և այլն: Հակոբ Շամախեցին այբբենական ցանկի յուրաքանչյուր վերնագրի դիմաց տալիս է կանոնագրքի հոդվածների մասնավոր համարները և ոչ թե ընդհանուրը, ինչպես հանդիպում ենք նաև այլ ձեռագրերում:

Ցանկից հետո տրված է այն կանոնագիրք ձեռագրի բովանդակությունը՝ (կանոնախմբերի վերնագրերը) №№ 3281, էջ 111բ, 8144, էջ 419ա—420ա), որից օգտվել է Հակոբ Շամախեցին՝ առարկայական ցանկը կազմելիս: Ուսումնասիրությունը ցույց տվեց, որ նրա օգտագործած ձեռագիրը պատկանում է վերևում նշված ձեռագրերի Ա խմբին: Եթե բացառենք սույն հրատարակության 3—4 էջերում լույս տեսած ցանկի վերջին՝ 37-րդ «Տեառն Յովհաննու Մանդակունւոյ ի կոչումն ապաշխարութեան՝ տուեալ ՀԹ» կանոնախումբը, ապա մնացած կանոնները միևնույն հաջորդականությամբ գտնում ենք Հակոբ Շամախեցու օգտագործած ձեռագրերում:

[2] o ձեռագրում առարկայական ցանկից ընկել է սկզբի մասը:

բաժանվում են հետևյալ ենթախմբերի. ա. befghilqrt. բ. m. գ. acd: Այստեղ ամենից հետաքրքիրն այն է, որ Ա խմբի A ձեռագրի առարկայական ցանկի բովանդակությունը համապատասխանում է Բ խմբի ilt ձեռագրի ունեցած առարկայական ցանկի բովանդակությանը, իսկ սրանց դիմաց դրված համապատասխան հոդվածների ընդհանուր համարները տարբեր են, քանի որ երկու խմբում կանոնախմբերը տարբեր դասակարգում ունեն: Այս երևույթը չափազանց ուշագրավ է, ըստ երևույթին, այդ նմանության և տարբերության մեջ արտահայտվում է Ա խմբի A կամ որևէ այլ հնագույն ձեռագրից Բ խմբի հնագույն (Ա) ենթախմբի անցման երևույթը:

Թեև Կանոնագրքի առարկայական ցանկի բովանդակության դիմաց դրված ընդհանուր համարները պետք է համապատասխանեին Կանոնագրքում գտնվող զանազան կանոնախմբերի տվյալ հոդվածի ընդհանուր համարներին, բայց, ինչպես նշեցինք վերևում, շատ դեպքերում այդ համարները հաճախակի ընդօրինակությունների հետևանքով աղճատվելով շեղվում են: Այդ բանը ժամանակին նկատել են առանձին ձեռագրերի գրիչներ և թողել իրենց տարակուսանքը. օրինակ՝ C ձեռագրի գրիչը գրում է. «Ցայսքան տեղիս ոչ ուղիղ գնան համարագիր մեծ ցանկին ԼԴ ԼԴ, ՃԾԲ ՃԾԲ, ՃԿԵ ՃԿԵ, ՄԾԸ, Շ Շ, ՉԿ, ՊԲ ՊԲ»[1]: Նույն գրիչը մի այլ տեղ դարձյալ գրում է. «Մի զայրասցիս վասն թիւրութեան համարածս գծողիս, բազում աշխատեցայ և ոչ եղև հնար ուղղելոյ, քանզի մեծ ցանկն ի վերայ այսմ աւելի և պակաս համարացս է շինեալ»[2]: Մի այլ g ձեռագրի գրիչը գրում է. «Արդ՝ աղաչեմ զձեզ, ով սուրբ հայրք և եղբարք, անմեղադիր լերուք անյարմարութեան գրիս, քանզի շտապ գրեցի, այլև ցանկ ի սորա զաղայանքն ի յօրինակէն էր և վասն շտապով գրելոյս չի կարացի տեղն բերուլ...»[3]:

ԻԷ. Կանոնագրքի ներկա հրատարակության համեմատությունների համար օգտագործված 48 ձեռագրերից՝

1 ձեռագիր XI դարի է, 1 ձեռագիր XIII դարի, 3 ձեռագիր XIV—XV դարի, 36 ձեռագիր XVII դարի, 5 ձեռագիր XVIII դարի, 2 ձեռագիր XIX դարի:

Ինչպես տեսնում ենք, 36 ձեռագիր, կամ ավելի քան 80 տոկոսը ընդօրինակվել են XVII դարում, այն դարում, երբ 300 տարվա քաղաքական վայրիվերումների, հազար ու մի ասպատակությունների, հրի ու սրի միջով անցնելով, հայ ժողովուրդը, տարագաղթի պայմաններում, դեռ չքուժած իր վերքերը, նորից ձեռնամուխ է լինում մշակութային-լուսավորական աշխատանքներին, որոնք XVII դարում նկատելի աշխուժացում են ապրում: Այդ ժամանակաշրջանում ընդօրինակվում են բազմաթիվ ձեռագրեր, այն համոզմամբ, որ, ինչպես ասում է Վարդան Բաղիշեցին, «...Լ. ՝Ю գրոցս նորոգելն և ի հնութենէ յառաջածելն և ի փթածութենէ ի կենդանութիւն ածելն մեծ է, քան զեկեղեցիս շինելն...»[4]:

---

[1] Էջ 71բ, ներքևի լուսանցքում:

[2] Էջ 72ա:

[3] Էջ 170ա: T ձեռագրի երկու էջերի ներքևի լուսանցքներում, ըստ երևույթին մեկ ուրիշը այդ մասին նույնպես գրել է. «Ով եղբայր սեգիր համարն (իմա՝ հոդվածների ընդհանուր համարները— Վ. Հ.) ծուռ է գրած», էջ 247բ. տե՛ս նաև 260ա էջում:

[4] Մանր ժամանակագրություններ, հա. II, Երևան, 1956, էջ 386:

*Նույնքան հետաքրքիր է ձեռագրերի ընդօրինակման վայրերի պատկերը։ Դժբախտաբար վերոհիշյալ 48 ձեռագրերից 24-ի ընդօրինակման վայրերը հայտնի չեն, իսկ 24-ից միայն երեքն է ընդօրինակվել բուն Հայաստանում, իսկ մնացած 21 ձեռագրերը՝ այլ վայրերում։*

*ԻԸ. Օգտագործված ձեռագրերի նկարագրության բաժնում՝ բացի 48 ձեռագրերից, նկարագրել ենք նաև №№ 3788, 4088 ձեռագրերը, որոնք, թեև ուսումնասիրել ենք, բայց չենք օգտագործել համեմատությունների համար։ Մեր օգտագործած ձեռագրերը չեն սահմանափակվում Կանոնագրքի քննական բնագրի համար օգտագործվածներով։ Ընդհակառակը, մեկ տասնյակից ավելի ձեռագրերում թեև պահվել է Կանոնագրքում եղած կանոնախմբերի մեծ մասը բայց որովհետև այդ ձեռագրերում բազմաթիվ հոդվածներ շատ հաճախ համառոտվել են, հաճախ էլ ընդարձակվել և կամ բոլորովին դուրս նետվել, ուստի և Կանոնագրքի համահավաք բնագիրը կազմելու համար ոչ մի կերպ հնարավոր չէր օգտագործել, ուստի նման ձեռագրերի նյութերը օգտագործեցինք Ծանոթագրությունններ բաժնում[2]։*

*Մատենադարանում կան ուրիշ բազմաթիվ ձեռագրեր, մի քանի տասնյակի հասնող, որոնց մեջ գտնվում են առանձին կանոնախմբեր, բայց շատ հաճախ կանոնախմբերի հոդվածները բերված են կրճատումներով կամ համառոտված, օրինակ՝ №№ 44, 80, 487, 601, 837, 839, 1495, 2576, 2713, 3276, 3433, 6036, 6907, 7060, 8172, 8704, և այլ ձեռագրերում։ № 3276 ձեռագրում ոչ միայն կրճատ են բերված առանձին կանոնախմբերի հոդվածները, ասենք՝ Անկյուրիայի ժողովից բերված է երկու հոդված, Նիկիայից՝ 5, Կեսարիայից՝ 3, Նեոկեսարիայից՝ 4, Աթանասից՝ 57, Գրիգոր Լուսավորչից՝ 22, այլև առանձին կանոնախմբերից ոչ մի հոդված չի բերվում, բավարարվելով հետևյալ հիշատակությամբ. «Կանոն Անտիոքայն ոչ գրեցաւ» (էջ 175ա), «Կանոնք Սարդիկեայ ոչ գրեցաւ» (էջ 175բ), «Կանոնք Եփեսոսի ժողովոյն աստ ոչ գրեցաւ» (էջ 175բ) և այլն և այլն։ Բնական է՝ նման ձեռագրերը ոչ միայն չէին կարող մեր գործին օգնել, այլև դրանց հետևից ընկնելով, նույնիսկ, չէինք կարողանա, թերևս մեր կյանքի ամբողջ ընթացքում, տեսնել սույն աշխատության ավարտման մոտավոր եզրերը։ Այդ պատճառով էլ ձգտել ենք օգտագործել Կանոնագրքի համեմատաբար լրիվ կամ լավ պահպանված ձեռագրերը։ Իսկ եթե պատահի մեկ կամ երկու նման ձեռագիր, որ չենք օգտագործել, փույթ չէ, քանի որ եղածից բացի, այդ օրինակներից հազիվ թե նոր բան սպասվեր[3]։ Հնարավորություն չենք ունեցել, արտասահմանյան բազմաթիվ մատենադարաններում գտնվող հայերեն կանոնագիրք-ձեռագրերը օգտագործել Կանոնագրքի ներկա հրատարակության համեմատական բնագիրը կազմելիս[4]։*

---

*[2] Սրանց մասին տես Օգտագործված ձեռագրերի Նկարագրության բաժնում։*

*[3] №№ 9769 (սկզբից թերի) և 10137 ձեռագրերը թեև լրիվ կանոնագիրք են, որոնք պատկանում են մեր կողմից օգտագործված ձեռագրերի Բ խմբին, սակայն, համեմատությունների ժամանակ դրանք չենք օգտագործել, որովհետև համահավաք բնագրի աշխատանքներն ավարտելուց և տպագրության հանձնելուց հետո միայն Մատենադարանը ձեռք բերեց դրանք։*

*[4] Էջմիածնում պահվում է երկու կանոնագիրք ձեռագիր։ Մեր ուսումնասիրությունը ցույց տվեց, որ այդ ձեռագրերը Հակոբ Ամասացու հեղինակությունն են և պիտանի չեն այս և հաջորդ հատորների համար։*

Օգտագործել ենք միտյն արտասահմանում գտնվող ձեռագրերի հիման վրա կատարված առանձին կանոնախմբերի հրատարակությունները։ Այդպիսիների տարընթերցվածները տվել ենք բնագրի տողատակ, օրինակ՝ Առաքելական (Ա) կանոնախմբի Հ. Տաշյանի «Վարդապետութիւն առաքելոց» (Վիեննա 1896)-ին առընթեր հրատարակությունը նշված է V տառով[1], Սարդիկեի ժողովի կանոնախմբի Ոսկյանի հրատարակությունը («Հանդէս Ամսօրեայ», 1942—1943 թթ.)՝ W տառով, Սահակ Պարթևի կանոնախմբի Վենետիկի հրատարակությունը («Սոփերք Հայկականք», հտ. Բ, 1853)՝ X տառով, Շահապիվանի ժողովի և Սևանտոս եպիսկոպոսի կանոնախմբերի՝ Ն. Ակինյանի հրատարակությունը («Հանդէս Ամսօրեայ», 1949)՝ Z տառով, Հովհաննես Օձնեցու կանոնախմբի Վենետիկի հրատարակությունը[2] Y տառով։

Սակայն՝ այդպես չենք վարվել այն կանոնախմբերի հրատարակությունների հետ, որոնք կատարվել են Երևանի Մատենադարանի ձեռագրերից, օրինակ՝ «Կանոնք Պարտաւի ազգային ժողովի (Սիոն կաթողիկոսի)» (Ա. Ղլտճյանի հրատարակություն), «Կանոնք Ներսէսի Բ կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» (Ա. Ղլտճյանի հրատարակություն), «Կանոնք Դունայ սուրբ ժողովոյն» (Մխիթար վարդապետի և Ս. Տիգրանյանի հրատարակություն), Գանգրայի ժողովի[3] (Լ. Խաչիկյանի հրատարակություն) կանոնախըմբերը, ինչպես նաև Աբել Մխիթարյանցի «Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ», Ն. Մելիք-Թանգյանի «Հայոց եկեղեցական իրաւունքը» (Ա գիրք), Ա. Ղլտճյանի «Կանոնգիրք Հայոց»-ը։ Սրանք չենք օգտագործել, որովհետև մեր ձեռքի տակ կային վերջիններիս հրատարակության հիմք հանդիսացող ձեռագրերը[4]։

Մատենադարանի երկու՝ №1490, 1905 ձեռագրերում, XVII դարի թարգմանությամբ գտնվում են Նիկիայի, Կ. Պոլսի, Եփեսոսի և Սարդիկեի ժողովների կանոնախմբերը, սրանց նախորդող և հաջորդող գրությունները, ժողովներում արտասանած ճառերը. քանի որ այդ թարգմանությունը կարող էր կատարված լինել հունարեն հրատարակված մի որևէ բնագրից և եղածն էլ ունի զգալի շեղումներ Կանոնագրքի համապատասխան կանոնախմբերից, ապա այդ թարգմանությունը չօգտագործեցինք, բավականանալով դրանց մասին այս հիշատակությամբ։ Այդպես վարվեցինք նաև №4036 ձեռագրի նըկատմամբ, որի 2ա-161բ էջերում գտնվում է Դիոսկորոս Աղեքսանդրացու Եփեսոսի ժողովի պատմությունը և կանոնախումբը՝ Գևորգ Դպիր Պալատցու թարգմանությամբ (XVIII դար)։

ԻԹ. Վերևում նշված Բ խմբի չորս ձեռագրերում պահվել է Հովհաննես Օձնեցու հիշատակարանը, որը, ժամանակին պետք է կից եղած լիներ նրա

---

[1] Այս հրատարակության ընթերցումները բավական մոտ են մեր օգտագործած kmp» ձեռագրերի ընթերցումներին։

[2] «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք», Վենետիկ, 1833։

[3] Տես Լ. Խաչիկյան, Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից (IV դար) աշխատության 100—110 էջերում։

[4] Չենք օգտագործել Հ. Հետիկյանի Collectio Canonum Ecclesiae Armenae (Վենետիկ, 1940) հրատարակությունը, որովհետև վերջինս ստացվեց Կանոնագրքի Առաքելական երկու կանոնախմբերի գիտական բնագիրը կազմելուց հետո։ Համենայն դեպս, թեթևակի համեմատությունը ցույց տվեց, որ առանձին տարբերություններ չկան, որովհետև սրա հրատարակության հիմքում ևս դրված է Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի մատենադարանի № 131 ձեռագիրը։

կազմած Կանոնագրքին։ Քանի որ նա այդ հիշատակարանում նշում է, թե ինչու և ինչպես է կազմել Կանոնագիրքը, նպատակահարմար գտանք հիշատակարանը զետեղել Կանոնագրքի վերջում, իր՝ Հովհաննես Օձնեցու կանոնախմբից անմիջապես հետո, որպես Կանոնագիրքը եզրափակող գրություն[1]։

Այս հատորի վերջում դրել ենք «Հավելված» բաժինը, որտեղ զետեղել ենք մի քանի կանոնախմբերի մեզ հասած հնագույն պատառիկները։ Եվ որովհետև վերջիններս բավականին ընդարձակ են, դրանք չենք մուծել համապատասխան կանոնախմբերի հոդվածների ծանոթագրություններում, այլ դրել ենք առանձին և ամբողջական, քանի որ Հովհաննես Օձնեցու կազմած Կանոնագրքի կառուցվածքը և կազմման սկզբունքները պարզելու խնդրում կարող են ուշադրության արժանի նյութեր տալ։ Այդ պատառիկները գտնվում են Մատենադարանի Պատառիկների ֆոնդում հետևյալ համարներով և բովանդակությամբ.

№ 347. Կղեմէսի կանոնախումբ։

№ 608. Շահապիվանի ժողովի, Ներսեսի և Ներշապուհի կանոնախմբեր։

№ 1216. Սահակի Պարթևի կանոնախումբ։

№ 1735. Հովհաննես Օձնեցու կանոնախումբը[2]։

Հավելվածում դրել ենք նաև №№ 4201, 2151 ձեռագրերի պահպանակները, որոնցից առաջինը բովանդակում է Առաքելական (Ա) կանոնախմբի վերջաբանը[3], իսկ երկրորդը՝ Բարսեղ Կեսարացու կանոնախմբի հոդվածների ցանկը և սկզբի մի քանի հոդվածները[4]։

Հավելվածում այս նյութերը հրատարակում ենք Կանոնագրքի կանոնախմբերի հաջորդականությամբ։

Լ. Այժմ մեր կատարած աշխատանքի մասին։ Համեմատության համար ընտրած ձեռագրերը ուսումնասիրելուց հետո արտագրեցինք B ձեռագրի բնագիրը՝ Առաքելական-ից մինչև Հովհաննես Օձնեցու կանոնախումբը։ Մնացած 46 ձեռագրերը համեմատել սկսեցինք վերջինիս հետ։ Համեմատության աշխատանքը կատարում էինք միայնակ, և այն տևեց 1955 թ. մինչև 1957 թ հունիսը։

Համեմատությունները կատարելիս աշխատել ենք նվազագույնի հասցնել մեր կողմից թույլ տրված հնարավոր վրիպումները։ Այդ նպատակով արել ենք այն, ինչ թույլ կտար մեր ուժերի լարումը։ Ձեռագրերի համեմատության ժամանակ յուրաքանչյուր ձեռագրի մասին հավաքել ենք անհրաժեշտ տվյալներ Նախաբանում և Ծանոթագրություններ բաժնում օգտագործելու

---

[1] Հիշատակարանի հրատարակության հիմք վերցրինք C ձեռագիրը, իսկ մյուսների տարընթերցումները դրեցինք տողատակ, պահելով այդ ձեռագրերի և մի հրատարակության յուրաքանչյուրի համար նշված լատինական տառերը։ B տառով նշեցինք Մ. Չամչյանի «Պատմութիւն Հայոց» (հտ. Բ, Վենետիկ, 1785)-ում հրատարակված (էջ 395—396) Հովհաննես Օձնեցու հիշատակարանի տարընթերցվածները։

[2] Այս պատառիկներից նախապես միայն № 608-ն էր մեզ ծանոթ, իսկ մնացած երեքի մասին տեղեկացանք Մատենադարանի պատառիկների նկարագրության մատյանից, որը կազմել էր Մատենադարանի գիտաշխատակից Ս. Ն. Քոլանջյանը։

[3] Այս ձեռագրի պահպանակի վրա մեր ուշադրությունը հրավիրեց Մատենադարանի գիտաշխատակից Ս. Գ. Կալաֆարյանը, որի համար հայտնում ենք մեր շնորհակալությունը։

[4] Հավելվածում հրապարակում ենք այս հատորում տեղ գտած կանոնախմբերի հնագույն բեկորները, իսկ մնացածները, որոնց համապատասխան կանոնախմբերը կհրապարակենք առանձին հատորով, կդնենք վերջինիս հավելվածում։

նպատակով։ Կանոնագրքի քննական բնագիրը պատրաստվում էինք կազմել, երբ 1957 թվականի օգոստոսի 22-ին Նոր Ջուղայից (Իրան) ստացանք A ձեռագրի լուսանկարչական պատճենը։ Դրանից մեր աշխատանքի ընթացքը մի փոքր փոխվեց, որովհետև որոշեցինք A-ն դնել այս հրատարակության հիմքում։ Այդ պատճառով, նախ՝ մեր ձեռքի տակ եղած B տարբերակի մեքենագրված օրինակը համեմատեցինք A-ի հետ և առաջինը դարձրինք վերջինիս ուղղագրությամբ և ընթերցումներով,, իսկ այնուհետև մյուս ձեռագրերի համեմատության թերթիկները բառ առ բառ համեմատելով A-ի, ապա անմիջապես նաև B-ի հետ, հավաքում էինք բնագրական տարբերությունները տողատակին նշելու համար, հենց այդ ժամանակ էլ համեմատում էինք արտասահմանում լույս տեսած առանձին կանոնախմբերի հրատարակությունները և նշում տարբերությունները։ Այս աշխատանքները տևեցին շուրջ մեկ տարի։

Ձեռագրերի համեմատության ժամանակ նշեցինք բոլոր տարբերությունները, հետագայում, երբ կազմում էինք Կանոնագրքի համահավաք բնագիրը, կատարեցինք, ճիշտ է քիչ, բայց որոշ ընտրություն[1]։ Եթե մյուս ձեռագրերը տալիս էին ճիշտ ընթերցում, դրանք մուծեցինք բնագրում, իսկ A-ի ունեցածը նշեցինք տողատակին։ Նույնիսկ այն դեպքում, երբ հունարենից թարգմանված կանոնախմբերում մի երկու ձեռագիր ճիշտ ընթերցում էին տալիս, համապատասխան հունարենին, իսկ մեծ մասը՝ ոչ, դարձյալ վարվեցինք վերևում նշվածի նման, օրինակ՝ Լավոդիկեի կանոնախմբի ԺԷ հոդվածում (էջ 232) միոյ միոյ բառը 31 ձեռագրերում գրված է միոյ, հունարենն ուներ առաջինին համապատասխան՝ ἕκαστον, վերևում նշեցինք միոյ միոյ, տողատակ միոյ։ Բայց եթե այդ տարբերությունը վերաբերում է մի աննշան բառի, ապա փոփոխություն չենք կատարել։

Մի քանի դեպքերում, երբ բառն աղճատվել է կամ ընկել և միտքը չի հասկացվում կամ անհարթ է, իսկ մեր օգտագործած բոլոր ձեռագրերը տալիս են միայն աղճատված ընթերցում, մինչդեռ հայերեն բնագիրն ինքը մասամբ հուշում է սխալի ուղղումը, իսկ հունարեն կամ մի այլ սկզբնաղբյուր ունի ուղիղ ընթերցում, ապա համաձայն վերջիններիս՝ վերականգնել ենք բառի ուղիղ ձևը, բնագրում անկյունավոր փակագծերում նշելով բառի լրացված մասը կամ ավելացված բառը. օրինակ՝ 259-րդ էջի 13-րդ տողում բոլոր ձեռագրերն ունեն «որ». հետևելով հունարենին՝ ուղղեցինք «որ[բ]». կամ՝ 280-րդ էջի 13-րդ տողում բացակայում է «կամ հրապարակաւ», որն ունի միայն հունարենը, ավելացրինք՝ «[կամ հրապարակաւ]». 502-րդ էջի 3-րդ տողում կարդում ենք. «թեթեւացուցանէ ոգւոցն մեռելոց». միտքը պարզ չէ. Մովսես Կաղանկատվացու Պատմության բնագրից ավելացրինք՝ «զբեռինս» բառը, այսպես՝ «թեթեւացուցանէ [զբեռինս] ոգւոցն մեռելոց». տես նաև 268-րդ էջի 13-րդ տողի «[ի] լիշումն», 328-րդ էջի 1-ին տողի «[Պատասխանի]» բառերը և այլն։

---

[1] Մի քանի տեղ՝ 19, 133, 168—169, 180—190, 240—241, 247, 273—275, 277—278, 289—290, 301—302, 327, 330, 334, 352—353, 358—359, 433, 445, 458, 475, 491—492, 496—497, 501—502, 524—526, 530 էջերում, երբ այլ ընթերցումների քանակը շատ է եղել և տեխնիկապես հնարավոր չէր դասավորել նույն էջում, կատարել ենք որոշ կրճատում՝ հանել ենք ը որոշիչ հոդի, բառավերջի յ-ի դրությունը, յ նախդրին վերաբերող այլընթերցումները, ինչպես նաև մի շարք այնպիսի բառերի այլընթերցվածները, որոնք ուրիշ էջերում բազմիցս հանդիպում են և էական նշանակություն չունեն։

ԼԱ. A ձեռագրում հաճախ թիւն վերջավորություն ունեցող բառերը, առանց նշանի, հապավված են թն. Նման դեպքերում նշել ենք թիւն ձևը: Այդպես ենք վարվել նույն ձեռագրում որոշակիությամբ չգործածվող ե և է տառերի նկատմամբ, գրելով միայն ուղիղ ձևը, բացառությամբ հիշատակարանի, ուր պահեցինք գրչության ձևը, նման տառերը դնելով չեղատառ: Միօրինակությունը պահպանելու նպատակով. անհրաժեշտության դեպքում ղ-ն նշել ենք լ, իսկ տարբերությունները դրել տողատակ: Ուշադրություն չենք դարձրել բառասկզբի և բառամիջի ը տառին, բնագրում պահելով ճիշտ ուղղագրությունը, օրինակ՝ պաՏըս, գրել ենք պաՏս, ըզմտաւ՝ զմտաւ և այլն: Այդպես նաև, Դ շաբթի թե չորեքշաբթի և այլն:

Համարյա բոլոր ձեռագրերում էլ, ինչպես արդեն նշել ենք, երբեմն գրիչների, երբեմն հետագայում ուրիշների կողմից կատարվել են առանձին տառերի, բառերի և նույնիսկ նախադասությունների ուղղումներ, ճշտումներ և գրանցվել՝ աջ և ձախ կամ ստորին լուսանցքներում, երբեմն էլ տողամիջին: Այն ուղղումները, որ կատարել են տվյալ ձեռագրի գրիչները, համեմատության ժամանակ նկատի ենք ունեցել և տվյալ տառը, բառն ու նախադասությունը ընթերցել ուղղված ձևով, իսկ եթե դրանք կատարվել են հետագայում, ուրիշների կողմից, նման ուղղումները նկատի չենք ունեցել: Կանոնագիրքը հրատարակում ենք մեսրոպյան 36 տառերով. տարբերություններում չենք նշել ու և օ տառերի զանազանությունը, բայց եթե մի բառի տարբերությունը անհրաժեշտ է եղել նշել մի այլ առիթով, ապա այդ ժամանակ ու և օ տառերի տարբերությունը նշել ենք տողատակ. օրինակ՝ բնագրի «սպասու կալ» ձևը (էջ 129, տող 8) ach·klmoprst ձեռագրերում գրված է «սպասաւորել», իսկ d-ում՝ «սպասօրել» տողատակ նշել ենք այսպես. «achi klmoprst սպասաւորել (d սպասօրել) ւիւ. սպասու կալ»: Այդպես է նշված նաև ուրիշ դեպքերում: Եթե առանձին ձեռագրերում որևէ բառ սխալմամբ կրկնված է, տողատակին նշվում է տվյալ բառը, ապա կողքը շեղատառ ավելացվում՝ կրկնված է: Հաճախ միևնույն տողում միևնույն բառը երկու, նույնիսկ երեք անգամ նշված է լինում. որպեսզի տողատակին նշված տարբերությունը կամ չիքը կոնկրետ վերաբերվի դրանցից մեկին, տվյալ բառի նախորդ կամ հաջորդ բառը, ըստ հարմարության, դրել ենք կլոր փակագծերում. օրինակ՝ 33-րդ էջի 3-րդ տողում «տէր» բառը գործածված է երկու անգամ. իսկ երկու ձեռագրեր չունեն «տէր» բառերից մեկը. իմանալու համար, թե տողատակի նշումը որին է վերաբերում, վարվել ենք այսպես. «Yû չիք տէր (տաւնից)», նույնպես և չիքերը՝ «Y չիք ի (հայր)», այսինքն Y ձեռագրում չի պահվել «հայր» բառին նախորդող ի-ն (էջ 96, տող 16): Այս դեպքում, կլոր փակագծերում վերցված բառը հաճախ կրճատ ենք դրել, տեղ չգրավելու համար, օրինակ, «չիք եւ (դմխ.)» էջ 66, 7-րդ տողի տողատակին, այսինքն նշված ձեռագրերը չունեն «զմխիթարիչն» բառին նախորդող «եւ»-ը: Պատահում է, որ մի քանի ձեռագրերում տարբեր է ոչ թե մի բառ, այլ մի նախադասություն, իսկ այդ ձեռագրերը տալիս են բառերի մի շարք այլընթերցումներ. նման դեպքում նախ տողատակին նշում ենք այդ տարբերությունը ունեցող ձեռագրերի լատիներեն տառերը, որոնք փոխարինում են ձեռագրերի համարներին, ապա արտագրում տվյալ նախադասությունը, և եթե որևէ բառի ուղղագրությունը տարբեր է, տվյալ բառի մոտ կլոր փակագծերում նշում ենք ձեռագրի տառը և տվյալ բառի ուղղագրությունը, ապա անցնում նախադա-

ստւթյան հաջորդ բառին և այսպես մինչև տվյալ նախադասության ավարտը. օրինակ՝ Կղեմեսի ԻԱ հոդվածը (էջ 80) բնագրում նշված է այսպես. «Եթէ ոք ժառանգաւոր զինքն կրճատեաց՝ լուծցի, քանզի սպանող ինքեան է» տողատակ տարբերությունը գրել ենք այսպես «A$_1$ IJKLMNOPQRSTVXYZW ûn եթէ ոք ի վիճակելոցն (K ի վիճակելոյն n ի վիճակելոց) զինքն կրճատեաց ի բաց լուծցի (IJû լուծցի ի բաց V ի բաց որոշեսցի լուծցի) քանզի սպանող (A,n սպաննող Y սպանօղ) եղեւ անձին (n անձինն) իւրում (NOP QRû իւրոյ W չիք իւրում)»։

Հաճախ տողատակին նշված է, օրինակ, «û չիք դի… թէ» (էջ 53, տող 12). դա նշանակում է, որ û ձեռագրում չի պահվել «դի» բառից մինչև «թէ» բառը։ Եթե տողատակ նշված է ձեռագրի լատիներեն տառը և գրված որևէ բառի տարբերություն, ապա դրված է ստորակետ և գրանցված մի այլ բառի տարբերություն, դա նշանակում է, որ նշված տարբերությունները վերաբերում են միևնույն ձեռագրին, օրինակ՝ բնագրի 252 էջի 3-րդ տողի տողատակ գրված է «q նա դառն փխ. դառնալ, չիք և լուծումն զտանել». դա նշանակում է q ձեռագիրը «դառնալ» բառի փոխարեն անի «նա դառն», իսկ բնագրի «և լուծումն զտանել» հատվածը չունի։ Բնագրում տողատակերին կան, օրինակ, այսպիսի նշումներ՝ 289-րդ էջի 1-ին տողատակին՝ «A—Wegh ilmort հարցումն փխ. վասն» կամ 290-րդ էջի 7-րդ տողատակին AK—VZW ծeûabcdf—s գհայհոյութիւն» և այլն։ Առաջին դեպքում այդ նշանակում է A-ից մինչև W(A—W)[1] տառերի միջև ընկած BCDEFGH և այդպես մինչև W ձեռագրերը վասն-ի փոխարեն ունեն հարցումն. փոխանակ կրկնելու A-ից մինչև W բոլոր տառերը, կրճատ նշել ենք A—W։ Նույնը երկրորդ դեպքում՝ A, K-ից մինչև V (K—V) և abcd, f-ից մինչև s (f—s) ձեռագրերն արտահայտող լատիներեն տառերի հաջորդականությունը գրել ենք կրճատ՝ K—V և f—s։

Տողատակ նշված շեղատառ գրությունները պետք է դիտել որպես փոքրիկ ծանուցումներ։ Բացահայտ սխալները, որոնց հանդիպում ենք միայն մեկ ձեռագրում, օրինակ, «N ուստ փխ. սուտ» (էջ 236, տող 10), «L աշխարհանակաց փխ. աշխարհականաց» (էջ 253, տող 7), «R յանդուդն փխ. յանդուգն» (էջ 253, տող 11), «b շթոթէր փխ. շփոթէր» (էջ 289, տող 12), «Q փոխր փխ. փոքր» (էջ 252, տող 12), «C առանչ փխ. առանց» (էջ 252, տող 7), «e պիսոյ էր փխ. պիտոյ էր» (էջ 278, տող 11) և այլն և այլն, ուշադրության չենք առել, իսկ եթե կրկնվել են մի քանի ձեռագրերում, այդպիսիները դրել ենք տողատակին։

211-րդ էջի տողատակ (6-րդ տող) կա այսպիսի մի նշում «Qd վարձք (W կամք) փխ. վարք»։ Դա նշանակում է, որ բնագրի վարք բառը d ձեռագրերում հանդիպում ենք վարձք, իսկ W ձեռագրում՝ կամք ձևով։ Այդպես նախընտրեցինք նշել, որպեսզի վարք բառը չկրկնենք։

Մի այլ առիթով՝ տողատակ, բնագրի 163-րդ էջի 10-րդ տողի մի բառի համար արձանագրեցինք այսպիսի նշում. «բացի AMNXalmn-ից մնացած ձեռ.-երը (կոչէ) քորեպիսկոպոս»։ Այդ նշանակում է, որ բնագրի քորեպիսկոպոս բառը ունեն նշված ութ ձեռագրերը, իսկ մյուսները՝ քորեպիսկոպոս։ Նույն ձևով վարվեցինք մնացած դեպքերում։

[1] Համահավաք բնագրի կազմման ժամանակ ձեռագրերի №-ները լատինական տառերով փոխարինելիս լատինական այբբենի վերջին տառերը վրիպմամբ գնացել են VXYZW հաջորդականությամբ, փոխանակ VWXYZ-ի։ Ուստի A—W նշման մեջ պետք է ներառված համարել նաև X, Y և Z տառերը։

[ ] Նշանով տողատակին նշված են այն բառերը կամ վանկերը, որոնք ձեռագրերում բաց են թողնված գրիչների անուշադրության կամ բնագրի եղծված լինելու պատճառով. իսկ < > նշանը՝ կրկնված վանկը կամ տառը։ Մեկ-երկու տեղ բնագրում բառը ակներև կերպով աղավաղված է և կամ անծանոթ, իսկ տարբերակներ կամ չունի և կամ թե դրանք փոքրաթիվ են և թե կասկածելի, նման դեպքերում այդ բառը բնագրում պահել ենք նույնությամբ, իսկ տողատակին նշել եղած տարընթերցումները. օրինակ՝ կորուսցի, նուրասցի (էջ 90, տող 10) և այլն։

Այնպես է լինում, որ սույն հրատարակության բնագրում բառը կիսվում է տողադարձի անհրաժեշտության բերումով, այդպիսի դեպքում տողատակին համապատասխան բառի տարընթերցումը նշում ենք բառի առաջին մասի տողի համարով. օրինակ՝ 124-րդ էջի 9-րդ տողում «հաւասարեսցեն» բառի «սարեսցեն» մասը դրված է 10-րդ տողում, մինչդեռ տողատակին մի քանի ձեռագրերի այլընթերցումը նշված է 9-րդ տողում։ Պատահում է և այնպես, որ չիք-ի իրար հաջորդող բառերը, որոնք տարբեր տողում են, նշել ենք առաջին բառի տողի համարով. օրինակ՝ 124-րդ էջի 4-րդ տողի վերջում դրված է «եւ», իսկ 5-րդ տողի սկզբում «առանց». տողատակին 4-րդ տողում նշել ենք «acdhiklmoprst չիք և առանց», թեև «առանց» բառը 5-րդ տողում է։ Նույնը տես նաև 166-րդ էջի 5-րդ տողի տողատակին «begq չիք զայնպիսին... լեկեղեցւոյ», թեև վերջին բառը 6-րդ տողում է և այլն։ 166-րդ էջի 1-ին տողի վերջում դրված է «ընդունելի», իսկ 2-րդ տողի սկզբում «եղեն». t ձեռագրում այդ հատվածն այսպես է՝ «եղեն ընդունելի», տողատակին այս տարբերությունը նշված է առաջին տողի համար։

Այնուհետև, 170-րդ էջի 6-րդ տողի վերջին «եղեւ» և 7-րդ տողի 1-ին «ժողովոյն» բառերի միջև մի քանի ձեռագրերում հանդիպում ենք «մեծ» կամ «մեծի» բառին. այս տարբերությունը նշված է 6-րդ տողի համար, այսպես՝ «bdefniklmopqrst եղեւ մեծ (t մեծի) ժողովոյն (f ժողովոյս)»։ Իսկ եթե տարբերությունը մի քանի տող է և կամ այն անցնում է հաջորդ էջերին, ապա տարբերության վերջին բառի մոտ, տողատակին, նշված է տողի համարը կամ էջի և տողի համարները. օրինակ՝ 254-րդ էջի 10-րդ տողի տողատակին նշված է «MRXY չիք եպիսկոպոսք... յայլ գաւառէ՝ տող 12 րդ» կամ 216-րդ էջի 17-րդ տողի տողատակին նշված է «begq չիք այլ անսայ... ժողով ժողովիցի՝ էջ 217, տող 1-ին»։

Ներկա հրատարակության էջերի տողերը համարակալել ենք՝ 5, 10, 15 ձևով, բայց տեխնիկական պատճառով պատահում է, որ այդ նշումները բաց են թողնված, օրինակ, 216-րդ, 218-րդ և այլ էջերում չի նշված «5»-ը, որովհետև այդ թվանշանը դնելու տեղ չկար։

ԼԲ. Կանոնագրքի համահավաք բնագրի համար օգտագործած մի քանի ձեռագրերից բացի՝ մնացած ձեռագրերում պահվել են Նիկիայի ժողովի առթիվ Կոստանդիանոս կայսեր գրած ուղերձը, Նիկիայի ժողովի Հավատամքը և մասնակիցների ցանկը։ Այս բնագրերը հնագույն և լավագույն ձեռագրերում, բացառությամբ 9 ձեռագրերի, գտնվում են Նիկիայի ժողովի կանոնախմբին կից, Այդ հանգամանքը մեզ ենթադրել է տալիս, որ այս բնագրերը հենց սկզբից մտել են Կանոնագիրք, Նիկիայի ժողովի կանոնախմբին կից։ Այդ իսկ պատճառով էլ դրանք հրատարակում ենք այստեղ։

Վերջին բնագրում նշված են ժողովի մասնակիցների անունները և նրանց ներկայացրած վայրերի անունները, որոնց մի մասի սկզբնական ձևերը

ձեռագրերի հաճախակի ընդօրինակությունների պատճառով տուժել են և այժմ մեզ ներկայանում են աղավաղված կերպարանքով։ Այդ անունների ստույգ ձևերի վերականգնումը առավել դժվարանում էր, որովհետև մեր ձեռքի տակ չունեինք այդ բնագրերի հունարեն կամ լատիներեն սկզբնօրինակները[1]։ Սակայն դժվարությունը մասամբ հարթվեց, երբ ուշադրություն դարձրինք մեր Մատենադարանում պահվող երեք ձեռագրերում՝ № 1905 (էջ 31ա-36ա), 1490 (էջ 25բ-28ա), 2620 (էջ 22ա-26ա), գտնվող Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկի XVII դարում հունարենից կատարված մի այլ թարգմանության վրա։ Կանոնագրքում և նշված երկու ձեռագրերում եղած մեզ հետաքրքրող բնագրի ուշադիր ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դրանք մեծ մասամբ համապատասխանում են միմյանց։ Այդ պատճառով էլ Կանոնագրքում Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկի համահավաք բնագիրը կազմելիս №№ 1905, և 2620 ձեռագրերի համապատասխան բնագրերը օգտագործեցինք որպես ուղեցույց։ Ի՞նչ է նշանակում այդ։ Մեր օգտագործած ձեռագրերի մի մասը տալիս է № 1905 ձեռագրին նման կամ մոտ ընթերցում, իսկ մյուս մասը տարբեր է և՛ Կանոնագրքի մնացած մասից և՛ № 1905 ձեռագրում եղածից. օրինակ՝ Կանոնագրքի ձեռագրերի մի մասը ունի «Փիղիպպոս ի Պամփիայէ» (էջ 135), «Նունեքիոս ի Լաւոդիկեայ» (էջ 143) ձևը, իսկ մյուս մասը՝ «Փիղիպպոս փ Մամփիսէ», «Նաւնէքիոս ի Ղաւոդիկեայ» ուղղագրական իրենց տարընթերցումներով. մինչդեռ № 1905 ձեռագիրն ունի «Փիլիպպոս եպիսկոպոս Պանեփիւսիոյ ստորագրեցի» (էջ 31բ), «Նունեքիոս Լաւոդիկիայ» (էջ 34ա)։ Հետևելով № 1905 ձեռագրի ունեցածին, համահավաքի համար օգտագործած ձեռագրերում ընտրեցինք ոչ թե «Ի Մամփիսէ» կամ «Նաւնէքիոս» ձևերը, այլ «ի Պամփիայէ», «Նունեքիոս» ձևերը, իսկ մնացած տարընթերցումները նշեցինք տողատակ։ Պատահում է և այնպես, որ մեր օգտագործած ձեռագրերում անունները բոլորովին տարբեր են № 1905 ձեռագրի ունեցածից, օրինակ՝ Կանոնագրքում կարդում ենք. «Անտիոքոս ի Սեմփոյէ», «Տիբերիոս ի Տոթոսէ» (էջ 135) իրենց տարընթերցումներով, իսկ № 1905 ձեռագրում այս մեջբերումն այսպես է. «Անտիոքոս եպիսկոպոս Մեմփիտիոյ ստորագրեցի» (էջ 31ա), «Տիբերիոս եպիսկոպոս Տէնտիւրիտիոյ ստորագրեցի» (էջ 31բ)։ Նման դեպքերում համահավաք բնագրում դրել ենք մեր օգտագործած ձեռագրերի մեծ մասի ունեցածը, զանց առնելով № 1905 ձեռագրի ընթերցումը։ Լինում են դեպքեր, ճիշտ է քիչ, որ որոշ անուններ կան Կանոնագրքի ունեցած ցանկում, իսկ 1905-ում չենք գտնում և կամ ընդհակառակը։ Այդպիսի դեպքում հետևել ենք Կանոնագրքի ձեռագրերի մեծ մասի ունեցածին։ Մի երկու դեպքում միայն, երբ Կանոնագրքի ձեռագրերի մի մասը ունի օրինակ. «ի Դանիոսէ», մյուս մասը՝ «ի Գակիոսէ» իրենց այլ և այլ ընթերցումներով, իսկ № 1905 ձեռագիրը՝ «ի գաւառէն Դաքիոյ» (էջ 35բ), վստահ կերպով ուղղեցինք «ի Դաքիոսէ», նկատի ունենալով Դ և Գ, Կ և Ն հայերեն երկաթագիր տառերի շփոթման հնարավորությունը։

Նիկիայի ժողովի մասնակիցների անձնանուններում և տեղանուններում շատ հաճախ ղ-ն գրված է հնագույն ուղղագրությամբ ղ-ը։ Հնարավոր թյու-

[1] Մեր օգտագործած հունարեն բնագրերում՝ Պիտրայի, Հեֆելեի հրատարակություններում, ինչպես նաև Σύνταγμα-ում (Γ. Α. Ῥάλλη καὶ Μ. Ποτλῆ, Σύνταγμα τῶν θείων καὶ ἱερῶν κανόνων, τόμος δεύτερος, Ἀθήνησιν, 1852, այսուհետև կնշենք Σύνταγμ.) և Ֆրիդրիխ Լաուխերտի գրքում («Die kanones der wichtigsten altkirchlichen Concilien», Freiburg i[m] B[reisgau] und Leipzig, 1896) Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկը չի պահվել։

րիմացությունից խուսափելու նպատակով այս մասում դ-երը նույնությամբ պահեցինք։

ԼԳ. Ընդհանուր մի այլ երևույթ էլ կա. այս ձեռագրերում էջերի ներքևի լուսանցքներում միշտ նշվում է այն կանոնախմբի անունը, որը տեղավորված է տվյալ էջում։ Շատ հաճախ էլ կանոնախմբի անվան հետ գրանցվում է նաև վերջինիս կարգահամարը։

Կանոնագիրք-ձեռագրերում կանոնախմբերի առաջին կամ երկրորդ վերնագրերի մոտ դրված են լինում հերթական համարներ։ Սակայն մի շարք ձեռագրերում դրանք նշված են անկանոն կամ չեն նշված։ Ներկա հրատարակության մեջ հետևել ենք A ձեռագրի համարակալմանը, իսկ մյուս ձեռագրերի տարբերությունները տողատակին չենք դրել։

Կանոնագիրք-ձեռագրերում հարց ու պատասխանի բնույթ ունեցող կանոնախմբերում, օրինակ՝ Աթանաս Աղեքսանդրացու, Սահակ Ձորոփորեցու, հարց ու պատասխանը սովորաբար դրված է կրճատ՝ հարց., հց., պատ. և այլն։ Հրատարակության բնագրում դրել ենք լրիվ՝ հարցումն, պատասխանի, առանց տողատակի նշումների։

Կանոնագիրք-ձեռագրերում հոդվածների ցանկի և հոդվածների միջև ձեռագրերը ունեն երկրորդ վերնագիր, բայց մեր օգտագործած ձեռագրերում մի երկու կանոնախմբեր չունեն այն. օրինակ՝ Ներսեսի և Ներշապուհի կանոնախումբը. միօրինակությունը պահպանելու նպատակով հրատարակության բնագրում դրեցինք երկրորդ վերնագիր, տողատակ նշելով «բոլոր ձեռագրերը չունեն երկրորդ վերնագիրը»։ Հնարավորին չափ աշխատել ենք թե՛ առաջին և թե՛ երկրորդ վերնագրերին տալ միօրինակություն, օրինակ՝ Ներսեսի և Ներշապուհի կանոնախմբի առաջին վերնագրում ձեռագրերի մի մասը ունի «գլուխք ԼԷ», իսկ մյուս մասը՝ ունի «գլուխ ԼԷ». նույնն է Աբրահամ Մամիկոնեից եպիսկոպոսի կանոնախմբի առաջին վերնագիրը. քանի որ կանոնախմբերի առաջին վերնագրերում պահեցինք «գլուխք» ձևը, այդ պատճառով էլ այստեղ նշեցինք «գլուխք ԼԷ» ձևով։ Հնարավոր է, որ առանձին կանոնախմբերի առաջին վերնագրերը Հովհաննես Օձնեցու մոտ լինեին տարբեր։ Համենայն դեպս ամենահնագույն կանոնագիրք-ձեռագրում՝ A, այդ բանը նկատում ենք. օրինակ՝ «Կեսարեայ կանոնիս գլուխք Ժ» կամ «Կանովնք Գանգրեայ գլուխք ԻԳ» և այլն։ Սույն հրատարակության մեջ աշխատել ենք առաջին վերնագրերում մտցնել միօրինակություն, գրելով «Կանոնք Կեսարեայ գլուխք Ժ» կամ «Կանոնք Գանգրայ գլուխք ԻԳ» և այլն, իհարկե, սրանց ձեռագրական տարընթերցվածները դնելով տողատակին։

ԼԴ. Որպես կանոն, որ ընդհանուր է 48 ձեռագրերի համար էլ, հոդվածների կարգահամարները, որոնք. ինչպես նշեցինք վերևում, երկուսն են մասնավոր և ընդհանուր, կանոնավոր վիճակում չեն մնացել. հաճախակի կատարված ընդօրինակությունների հետևանքով ձեռագրերի մի մասում կան կարգահամարների բացթողումներ կամ կրկնություններ, մյուս մասում՝ որոշ կանոնախմբեր բոլորովին չունեն համարակալումներ, ընդորում այս անկանոնությունից գերազանցապես տուժել են ընդհանուր կարգահամարները։ Եվ քանի որ սրանց տարբերությունները չափազանց շատ են, ավելորդ համարեցինք այդ հարցի մասին որևէ դիտողություն, տողատակի տարընթերցվածները չծանրաբեռնելու համար, այլ բավականացանք այս ընդհանուր նշումով։

*Սակայն ելնելով այս վիճակից, նպատակահարմար գտանք բուն Կանոնագրքի հոդվածների և առարկայական ցանկի վերնագրերի դիմաց նշված համապատասխան հոդվածների համարները սխալի դեպքում սրբագրել և ուղղել, որպեսզի ցանկի համապատասխան համարով կարողանանք գտնել Կանոնագրքի տվյալ հոդվածը։ Այդ նպատակով՝ եղած սխալները ուղղեցինք։ Նախ՝ Կանոնագրքի հաջորդական կանոնախմբերի հոդվածների ընդհանուր համարները, եթե կրկնվել են կամ բաց թողնվել, այդպես էլ պահեցինք, վերցնելով կլոր փակագծերում, իսկ մոտը նշեցինք հերթական ճիշտ համարը։ Այդպես շարունակեցինք մինչև վերջ։ Երկրորդ՝ այդ ուղղումները կատարելուց հետո համեմատեցինք առարկայական ցանկի բովանդակության վերնագրերի դիմաց գրված ընդհանուր համարները Կանոնագրքի հոդվածների սրբագրված ընդհանուր համարների հետ և եթե առարկայական ցանկում էլ նկատվեցին ինչ-ինչ պատճառներով տեղ գտած անճշտություններ, դրանք ևս վերցրինք կլոր փակագծերում, մոտը նշելով Կանոնագրքի հոդվածների մեր կողմից ուղղված ընդհանուր համարները, որպեսզի վերջիններս համապատասխանեն Կանոնագրքի հոդվածների համարներին։*

*Այսպիսով, առարկայական ցանկում և բուն Կանոնագրքում նշված կլոր փակագծերից դուրս եղած համարներով պետք է գտնենք մեզ հետաքրքրող հոդվածները, ուշադրություն չդարձնելով կլոր փակագծերում վերցված առարկայական ցանկի և բուն Կանոնագրքի հոդվածների ընդհանուր համարներին, որոնք շատ հաճախ տարբեր են։ Սակայն առարկայական ցանկում պատահում են այլ և այլ կարգի նշումներ ևս, օրինակ՝ երբեմն նկատվում են միայն կլոր փակագծերում նշված համարներ. դա նշանակում է, որ այդ համարով համապատասխան հոդված Կանոնագրքում չենք գտել. տես ԼԴ վերնագրի ՄԺ, ՅԽԷ, ՅԽԸ, ՅԽԹ համարները (էջ 7)։ Մի այլ դեպքում համարը գրված է միայն առանց կլոր փակագծերի. դա ցույց է տալիս, որ այն համապատասխանում է Կանոնագրքի հոդվածի մեր ուղղած համարին. տես ՀԴ վերնագրի ՃՂԹ համարը (էջ 9)։ Երրորդ դեպքում նշված որևէ համար Կանոնագրքի բնագրում հանդիպում ենք մի երկու. երբեմն մի քանի համար նշվածից ետ կամ առաջ. նման դեպքերում առարկայական ցանկում եղածը վերցրել ենք կլոր փակագծերում, իսկ Կանոնագրքի ուղղված համարը դրել առարկայական ցանկում՝ կլոր փակագծերից դուրս. տես Զ վերնագրի ՌԽԸ համարը (էջ 5). որը Կանոնագրքում համապատասխանում է ՌԾԴ (ՌԽԹ) համարին (էջ 499), մինչդեռ առարկայական ցանկում նշված է ՌԾԴ (ՌԽԸ) (էջ 5)։ Կան մի շարք հոդվածներ, որոնք չեն արտահայտվել առարկայական ցանկում, դրանք այդպես էլ թողել ենք։ Երբեմն միևնույն հոդվածի համարը կրկնված է առարկայական ցանկի տարբեր վերնագրերի ներքո. դա ցույց է տալիս, որ տվյալ հոդվածի բովանդակությունը շերտավորված է՝ այն ունի մեկից ավելի իմաստ, թեև հաճախ նման կրկնությունները նշված են սխալմամբ։ Մի քանի դեպքերում առարկայական ցանկի որևէ վերնագրում հոդվածների համարները հաջորդաբար չեն գնում. օրինակ՝ ՃԺԱ վերնագրում նախ նշված է ՄԾԹ, ապա ՃՀԸ (էջ 11)։ Դրանք նույն ձևով պահել ենք կլոր փակագծերում, մոտը նշելով ստույգ համարները։ Որոշ համարներ էլ նշված են առարկայական ցանկի էջերի լուսանցքներում, դրանք ևս պահված են հրատարակության բնագրում։*

*Քանի որ Կանոնագրքի քննական բնագրի հիմքում դրեցինք Ա խմբի A ձեռագիրը, որը լավագույններից մեկն է և հնագույնը՝ այդ ձեռագիր-*

ընդօրինակության սկզբում գտնվող կանոնախմբերի և առարկայական ցանկերն ամբողջությամբ, առանց համեմատությունների, հրատարակեցինք Կանոնագրքում, որպես նրա բաղկացուցիչ մասը։ Այստեղ կատարել ենք ուղղագրական հույժ անհրաժեշտ սրբագրությունները, իսկ ձեռագրի ունեցածը դրել տողատակ[1], չնշելով այս ձեռագրի համար կանոն դարձած Ե և Է տառերի շփոթման տարբերությունները։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ տվյալ դեպքում կանոնախմբերի և առարկայական ցանկերի վերնագրերը վերաբերում են ոչ միայն ներկա հրատարակության 24 կանոնախմբերի բովանդակած նյութերին, այլև մյուս կանոնախմբերին, թվով 57. ուստի առարկայական ցանկում նշված բազմաթիվ հոդվածների ընդհանուր համարները վերաբերում են նաև Կանոնագրքի շարունակությանը, որը լույս կտեսնի առանձին, որպես Կանոնագրքի հաջորդ հատոր։

ԼԵ. Մեզ հասած կանոնագիրք-ձեռագրերում լինում է և այսպես. կանոնախմբի հոդվածների ցանկում նշված վերնագիրը չունի համապատասխան հոդված. օրինակ՝ Սահակ Պարթևի կանոնախմբի ցանկում՝ ԽԹ վերնագրում նշված է «Վասն եպիսկոպոսաց և վարդապետաց», բայց կանոնախմբում ԽԹ հոդվածն այլ բան է։ Խնդիրն այն է, որ ցանկի ԽԹ վերնագրին համապատասխան հոդվածը ժամանակին եղել է, բայց ինչ-ինչ պատճառով հետագայում հոդվածի համարը դուրս է ընկել և ԽԹ հոդվածը միացվել է ԽԸ հոդվածին։ Նման դեպքերում համապատասխան հատվածը անջատեցինք և դրեցինք որպես առանձին հոդված՝ համապատասխան կարգահամարով։ Այսպես վարվեցինք նաև Հովհան Մանդակունու կանոնախմբի ցանկի Թ վերնագրի և Ժ հոդվածի հետ։ Ի դեպ, այս կանոնախմբի հոդվածների ցանկի վերնագրերը խառնիխուռն են և չեն համապատասխանում հոդվածների հերթականությանը, սակայն նորից չխանգարելու համար, այդ սխալներին ձեռք չտվեցինք։

Մի այլ հարց։ Հաճախ մի խնդրի մասին եղած հոդվածները տարբեր կանոնախմբերում կրկնվում են, օրինակ՝ ազգականների ամուսնությունը, ամասնալուծությունը և այլն։ Նման դեպքերի մասին նպատակահարմար չգտանք յուրաքանչյուր հոդվածին աղբյուրագիտական նշում կատարել լուսանցքում կամ համապատասխան ծանոթագրության մեջ, թե այդ հոդվածն ուրիշ որ կանոնախմբում կարող ենք գտնել, քանի որ աշխատության սկզբում, ինչպես կանոնագիրք-ձեռագրերում է, գտնվում է առարկայական ցանկ, որի միջոցով կարելի է գտնել նույնանման, բայց տարբեր տեղերում կրկնվող հարցերին վերաբերող կանոնները։

Կանոնագրքում Աստվածաշնչից կատարված մեջբերումները վերցրել ենք չակերտներում և ցույց տվել տեղը՝ նշելով յուրաքանչյուր էջի բնագրի տակ։ Իսկ այն մեջբերումները, որոնք վերցվել են այլ գրքերից և չկարողացանք նրանց աղբյուրները նշել, դարձյալ դրեցինք չակերտներում։

ԼԶ. Վերջում դրված Ծանոթագրություններ բաժնում խուսափել ենք տալ կանոնախմբերի կամ առանձին հոդվածների մասին պատմական տեղե-

---

[1] A ձեռագրի առարկայական ցանկի մի քանի վերնագրերի դիմաց, աջ և ձախ լուսանցքներում նշված են նաև կանոնախմբերի անուններ. օրինակ՝ ՃԺԱ վերնագրի դիմաց նշված է «Ղաւոդիկեա», ՄԽԱ-ի՝ «Սիմոնի», ՄԾԴ-ի՝ «Փիլիպպոսի» և այլն։ Սույն հրատարակության մեջ նման նշումները նկատի չեն առնված։

կություններ և ակնարկներ, որովհետև ներկա հատորը կարող էր կրկնապատկվել և դժվար օգտագործելի դառնալ։ Մեր նպատակը եղել է այս բաժնում, որպես լրացում, տալ քննական բնագրի կազմման համար չօգտագործված ձեռագրերի նյութերը և նշել բանասիրական որոշ դիտողություններ կապված այլ լեզուներից՝ ասորերենից և հունարենից թարգմանված կանոնախմբերի հետ։ Այն կանոնախմբերը, որոնք թարգմանված են ասորերենից և հունարենից, համեմատել ենք վերջիններիս հետ։ Առաքելական (Ա) կանոնախմբի համեմատության համար օգտագործել ենք ասորերեն բնագրի՝ բազմավաստակ բանասեր Հ. Տաշյանի հայերեն նոր թարգմանությունը[1], համապատասխան ծանոթագրություններում բերելով այդ թարգմանությունը, տարբերությունների նկատումը թողնելով հետաքրքրվողներին։ Հունարեն բնագրերը հայերենի հետ համեմատել և շեղումները նշել ենք, օգտագործելով հունարեն բնագրի Ի. Բ. Պիտրայի[2], Գ. Ռալլիի և Մ. Պոտլիի[3] ինչպես և Ֆ. Լաուխերտի[4] հրատարա-

---

[1] Հ. Տաշյան, Վարդապետութիւն առաքելոց, Վիեննա, 1896։

[2] Iuris ecclesiastici Graegorum historia et monumenta, tomus I, Romae, MDCCCLXIV.

[3] Σύνταγμα τῶν θείων καὶ ἱερῶν κανόνων, τόμος δεύτερος. Ἀθήνησιν, 1852, նույնի, հտ. III, Աթենք, 1853։

[4] „Die Kanones der wichtigsten altkirchlichen Concilien nebst den apostolischen Kanones", herausgegeben von Lic. Dr. Friedrich Lauchert, Freiburg i[m] B[reisgau] und Leipzig, 1896, աշխատությունը։ Այստեղ այլ ժողովների կանոնների թվում տեղ են գտել նաև մեզ հետաքրքրող՝ Նիկեայի, Կ. Պոլսի, Եփեսոսի, Անկյուրիայի, Նեոկեսարիայի, Անտիոքի, Սարդիկեի, Լավոդիկեի, Գանգրայի ժողովների և Կղեմեսի կանոնների հունարեն բնագրերը։ Ինչպես հեղինակն է նշում աշխատության ներածականում (էջ XVI–XXV), Անկյուրիայի ժողովի կանոնները վերցրել է Ռակկհամի, [ս]՛ մնացածները Մանսիի և Բրունսի հրատարակություններից։ Այսպիսով, Ֆ. Լաուխերտը նշված կանոնախմբերը վերահրատարակել է տպագրվածներից, իսկ վերջում (էջ 189—206) բերում է նաև մի քանի այլ հրատարակությունների համառոտ տարընթերցումները։ Ֆ. Լաուխերտի հրատարակությունը Պիտրայի հրատարակության (1864 թ.) համեմատությամբ լինելով նոր (1896 թ.), նա իր առաջաբանում խիստ է արտահայտվում Պիտրայի հրատարակության մասին, Ուլցենի հրատարակության հետ միասին այն համարելով «անբավարար փորձ», որովհետև նրա «տրամադրության տակ եղած ձեռագրական հարուստ նյութը համապատասխան մշակման ենթարկված չէ» (էջ IV)։ Մենք համեմատեցինք Պիտրայի և Լաուխերտի հրատարակությունները, եղած տարբերությունները նշելով ծանոթագրություններում։ Սակայն, այդ աշխատանքների ժամանակ նկատեցինք, որ եղած տարընթերցումները հիմք չեն տալիս համաձայնվելու Լաուխերտի տված վերոհիշյալ գնահատականին։ Եվ ահա թե ինչու։ Կան մի շարք տեղեր, ուր Կանոնագրքի ունեցածը համապատասխանում է Պիտրայի ոչ թե Լաուխերտի հրատարակությանը, օրինակ, Անտիոքի ժողովի Դ հոդվածում կարդում ենք. «կամ եպիսկոպոս ըստ կանխելոյ և յառաջ սովորութեանց կամ երէց կամ սարկաւագ» (էջ 208). Պիտրայի մոտ հունարենը նույնությամբ գտնում է. «εἴτε ὁ ἐπίσκοπος κατὰ τὴν προάγουσαν συνήθειαν, εἴτε ὁ πρεσβύτερος εἴτε ὁ διάκονος»։ Լաուխերտի մոտ բացակայում է εἴτε ὁ πρεσβύτερος (էջ 44) բառերը։ Անտիոքի ԺԳ հոդվածում կարդում ենք. «և ձեռնադրութիւն առնել յեկեղեցիս» (էջ 214)։ Պիտրայի բերած հունարենը համապատասխանում է հայերենին. «καὶ χειροτονεῖν ἐν ἐκκλησίᾳ»։ Վերջին ἐν ἐκκλησίᾳ բառը Լաուխերտը չունի (էջ 46)։ Նման տարբերություն կա Կանոնագրքի Անտիոքի 22-րդ և Պիտրայի ու Լաուխերտի հրապարակած նույն ժողովի 23-րդ հոդվածների միջև և այլն։ Սակայն, առանձին մի երկու դեպքում միայն Կանոնագրքի ունեցածը համապատասխանում է Լաուխերտի տվածին՝ օրինակ, Սարդիկեի 14-րդ հոդվածը Լաուխերտի մոտ այսպես է. «καὶ ταχέως ἀντικρὺ πρεσβυτέρου ἢ διακόνου» (էջ 67), ταχέως նշանակում է շտապ, շուտ, արագ։ Այս բառի փոխարեն Պիտրայի մոտ բերված է τραχέως, որը նշանակում է դաժան, խիստ, կոպիտ, կատաղած, մոլեգին։ Մինչդեռ Կանոնագրքում դրված է Լաուխերտի ընթերցմամբ. «և վաղվաղակի

կումթյունները, առանձին դեպքերում Հ. Հեֆելեի աշխատությունը[1], որ բացի հունարենից, երբեմն տրված են նաև լատիներեն կամ գերմաներեն թարգմանությունները։ Նպատակահարմար գտանք Ծանոթագրություններ բաժնում հունարեն բնագրերը ամբողջությամբ և կամ մասնակիորեն մեջ բերել ըստ պարագայի։ Այսպես, եթե հայերենը հանդիսանում է հունարենի բառացի թարգմանությունը, ապա հունարեն բնագիրը չենք բերում և այդ մասին որևէ նշում չենք կատարում։ Նմանապես եթե հայերենը բառացի համապատասխանում է հունարենին, բայց հունարենի առանձին բառեր կամ նախադասություն և կամ մի ամբողջական հատված դուրս է ընկել հայերենից, կամ հայերենում առանձին բառեր և նախադասություններ կան, որ չենք գտնում հունարենում, այդ դեպքում ևս հունարեն բնագիրը չենք բերում, և բավարարվում ենք միայն համապատասխան ծանոթագրություններում եղած տարբերությունները նշելով։ Իսկ այն դեպքերում, երբ հայերենը հանդիսանում է հունարենի ոչ թե թարգմանությունը, այլ վերջինիս բովանդակության վերաշարադրումը՝ երբեմն ընդարձակ, երբեմն համառոտ և խմբագրված ձևով, ապա հունարեն հոդվածը բերում ենք ամբողջությամբ, նշելով ընդհանուր դիտողություններ երկու բնագրերի առնչությունների մասին։ Միայն մի քանի դեպքերում բացառություն ենք արել և հունարենը չենք բերել, ինչպես՝ Գանգրայի կանոնախմբի առաջաբանը, Բարսեղ Կեսարացու կանոնախմբի 1, 8, 9, 18, 22-րդ հոդվածները, որովհետև դրանք բավականին ընդարձակ են ստուի և սեխնիկապես հնարավոր չէր ներկայացնել։ Ծանոթագրություններ բաժնում հունարենը բերել ենք համաձայն Պիտրայի հրատարակության. սակայն, Ռալլիի և Պոտլիի, ինչպես և Ֆ. Լաուխերտի հունարեն հրատարակությունները համեմատել ենք Պիտրայի հրատարակության հետ և կլոր փակագծերում նշել եղած տարընթերցումները՝ Σύν., II, Σύν., III, կամ L., ձևով, այսինքն Σύνταγμα-ի II կամ III հատորները[2] և Ֆ. Լաուխերտի հրատարակությունը։ Երկու բնագրերի համեմատությունների ժամանակ օգտագործել ենք նաև Նիկոդիմի աշխատության ռուսերեն թարգմանության համապատասխան[3] կանոնախմբերը։

Հունարենում գոյություն ունեն կանոնախմբերի միայն առաջին վերնագրերը, որ դրել են հրատարակիչները, իսկ երկրորդ վերնագրերը հունարենում ընդհանրապես չենք գտնում։ Այդ պատճառով կանոնախմբերի առաջին և երկրորդ վերնագրերի մասին հունարենի վերաբերյալ նշումներ չենք կատարել։

---

յանդիման երիցու կամ սարկավագի» (էջ 266—267)։ Բոլոր դեպքերում երկու հրատարակություններում դգալի տարբերություն ունի կետադրությունը։ Հունարեն նշված երկու հրատարակությունների տարբերությունները արդյունք են բնագրերի տարբեր խմբագրությունների։ Եվ մեզ թվում է, որ չպետք է այդ տարբերությունից ելնելով որևէ մեկը «անբավարար» համարել։ Ըստ երևույթին հայերեն թարգմանված առանձին կանոնախմբեր ժամանակին թարգմանվել են հունարեն տարբեր խմբագրություններից. այդ պատճառով էլ Կանոնագրքում եղածը ավելի հաճախ համապատասխանում է Պիտրայի, սակավ դեպքում Լաուխերտի հրատարակությանը։

[1] Conciliengeschichte, Erster Band. Freiburg im Breisgau, 1855.

[2] Մեզ չհաջողվեց ձեռքի տակ ունենալ Σύνταγμα-ի համապատասխան հատորը, որպեսզի նշեինք Աթանաս Աղեքսանդրացու և Բարսեղ Կեսարացու կանոնախմբերի Պիտրայի հրատարակության տարբերությունները։

[3] Правила (κανόνες) православной церкви с толкованиями, т. I, СПБ, 1911, т. II, СПБ, 1912.

Իսկ եթե վերնագիրը բնագրինն է, կատարել ենք համապատասխան նշում։ Եթե չհաշվենք Պիտրայի հրատարակության Կղեմեսի կանոնախումբը, հունարեն բնագրերում չկան առանձին կանոնախմբերի հոդվածների ցանկեր, այդ պատճառով էլ Ծանոթագրություններ բաժնում, բացի Կղեմեսի կանոնախմբի ցանկից այլ ցանկերի մասին նշում չենք կատարել։ Հունարեն բնագրի տարբեր կանոնախմբեր հաճախ չունեն առաջաբաններ, կամ եթե վերջիններս ունեն՝ Կանոնագիրքը չունի. այդպիսի դեպքերում կամ որևէ նշում չենք կատարում ծանոթագրությունների մեջ և կամ չենք բերում հունարեն բնագիրը։

Աշխատության վերջում դրել ենք Կանոնագրքի բոլոր հոդվածների ըստկզբնատողերը և մեր կազմած առարկայական, անձնանունների և տեղանունների ցանկերը։

Ներկա աշխատության հետ կապված առանձին հարցեր քննության են ենթարկվել Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի Սկզբնաղբյուրների հրատարակման սեկտորում, իսկ 1958 թվականից՝ Հին և միջին դարերի պատմության սեկտորում։ Սկզբնաղբյուրների հրատարակման սեկտորի ընդլայնված նիստերից մեկում (1957 թ. սեպտեմբեր) քննվեց Կանոնագրքի գիտական բնագրի մեր կատարած աշխատանքի փորձնական նմուշը։ Նիստի մասնակիցների կողմից եղան շատ արժեքավոր դիտողություններ, որոնք հաշվի առանք սույն աշխատությունը պատրաստելու ընթացքում։ Մեր շնորհակալությունն ենք հայտնում այն ընկերներին, որոնք իրենց խորհուրդներով այս կամ այն կերպ օգտակար են եղել մեզ այս դժվարին գործի ավարտման համար։

Կանոնագիրքը՝ Հայաստանի ավատական հասարակության դարաշրջանի պատմության այս հոյակապ հուշարձանը, հայ ժողովրդի արժեքավոր ավանդն է համաշխարհային մշակույթի գանձարանում։ Տեղն է հիշելու Լենինի խոսքերը, թե «...Միայն մարդկային ամբողջ զարգացմամբ ստեղծված կուլտուրան ճշգրիտ գիտենալով, միայն նրա վերամշակմամբ՝ կարելի է կառուցել պրոլետարական կուլտուրա»[1]։

Եթե սույն աշխատությունը օգնի քննադատական մշակմամբ վերհանելու այստեղ եղած բազմահարուստ նյութը և պարզելու մեր ժողովրդի պատմության ու մեծ մշակույթի առանձին հարցեր, մենք լիովին բավարարված և վարձատրված կլինենք։

Վ. Ա. ՀԱԿՈԲՅԱՆ

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հտ. 31, Երևան, 1952, էջ 348։

# ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Ձեռագրերին վերաբերող տեղեկություններից վերցրել ենք ամենակարևորները և այստեղ արված նկարագրությունը կարելի է համարել համառոտ: Բացի ընդհանուր տեղեկություններից՝ նկարագրություններում աշխատել ենք նշել յուրաքանչյուր ձեռագրի գրչագրական առանձնահատկությունը: Ձեռագրերից բերված են միայն հիշատակարանների առանձին հատվածները, որոնք վերաբերում են կանոնագիրք-ձեռագրերի ընդօրինակման բանասիրական հանգամանքներին:*

*Սկսենք Ա. խմբի ձեռագրերից.*

*1.* A. *Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի մատենադարան. № 131. Կանոնագիրք. թերթեր՝ 322. մեծություն՝ 23,6×16,5. նյութ՝ թուղթ. գիր՝ միջին մեսրոպյան երկաթագիր. միասյուն. վիճակ՝ ունի ընկած թերթեր[1], վերանորոգված. գրիչ՝ Հովհաննես. տեղ՝ սկսվել է «ի մեծ եկեղեցւոջն Պաղահոյ» (Կիլիկիայում, Սև լեռան վրա), վերջացվել է «Յովհաննու անապատ»-ում (Կիլիկիայում, Արմեն լեռան գագաթին)[2]. ժամանակ՝ 1098 թ.:*

Հիշատակարան, էջ 318ա—322ա. *«Փառք... իսկ բարերար և մարդասէր Տէրն մեր և Փրկիչն, ի ձեռն աստուածասէր և բարեպաշտ թագաւորաց, և հոգէազգումար միաբանելոց հարց և հայրապետաց յիւրաքանչիւր ժամանակս, ըստ պատահման չարին, ի ձեռն սուրբ սինհոդոսաց կարգէ ի բաց դշխարին չարութեանց հանդերձ և ըստ պատահման յաւրինեն կանոնս զգուշաւորս ի լրումն առաքելականին, զայս աւանդ առեալ հարքն մեր, հաւաքեցին ի մի զաստուածապարգեւ աւանդս, զկարգս և զկրաւնս եկեղեցւոյ, հասուցին առ մեզ, յորում ժամանակի հանդիպի թիւ թուականիս Հայոց ՇԽԷ. ի հայրապետութեան աստուածապատիւ տեառն Գրիգորիսի ի զարմէ սրբոյն Գրի[գորի՝] ամենայնիւ հարցն նմանեալ բարեկարգութեամբ, և զի լոյծ խռովութեան և բազմավրդով էր ժամանակս ի բռնակալութենէ այլասեռից, զայս սմանս յիւրոց հարազատաց ձեռնադրէ փոխանակ իւր և ինքն զանխլաբար պանդխտանայ աղաւթից և վերծանութեան պարապելով: Նին սորա ուսումնակից և վարժակիցք վարդապետք սուրբք և առաքինազարդք Գէորգ Մեղրն կոչեցեալ և Կիրակոս, որք վարժք յաստուածայինսն ուշ ունելով մարգարէական երանութեանցն.... Ի սոցա վարժարանէ այր ոմն հե-*

---

[1] *Քանի որ ձեռագրերից թերթեր ընկնելու մասին մանրամասն նշել ենք համեմատության էջերի տողատակին, այսուհետև նկարագրության մեջ կնշենք ընդհանուր ձևով:*

[2] *Այդ փակագծերում եղած տեղեկությունները վերցրել ենք Ն. Ակինյանից. տես Հանդէս Ամսօրեայ, 1930, էջ 562, ծանոթ. 25—26:*

ղամիտ եւ բառեշնորհ, ներհուն եղեալ մակացութեան արհեստի՝ Գրիգոր անուն, յոյժ ըղձափափագ տենչանաւք հրամայէ ինձ Յովհաննիսի գրել ղաստուածայաւր կտակս ի յիշատակ բարեաց իւր եւ ծնաւղաց իւրոց ի լուսաւորութիւն մտաց եւ ի մաքրութիւն հոգւոց, եւ իմ նայեցեալ ի սէր սիրեցելոյն Աստուծոյ, անյապաղ փութով սկսայ ի մեծ եկեղեցւոջն Պաղլահու, եւ անդ նեղեալ յեղեռնաթոյն ոմանց առաջնորդաց՝ ոչ ժամանեցի ի կէտ կատարման, դիմեցի յապահով եւ ի քրիստոսակարգ եկեղեցւոջս Յովհանայ անապատիս ի գլուխ լերինս, գունակ այնմ երեւելի քաղաքին, զոր Տէրն յաւետարանին ներբողելով ճառէ։ Ուր են բնակեալ բազմութիւն եղբարց խարազանազգեստից եւ երկաշան գործաւորաց եւ մշտահառաչ աղաւթականաց երկուս աչս ունելով սրատեսք հոգւոյն ճառագայթիւքն աստուածակոչք յառաջնորդական պաշտաւնն, որոյ երիցագունին Մեղիտէ անուն ճանաչի, եւ փոխանորդին Գրիգորիս, արք առաքինասէրք եւ բարեսէրք. գիտացեալ զթերութիւն գործոյս եւ գիտակ եղեալ, թե որ կամակից լինին գործելեացն՝ հաւասար են գործողացն, հրամայեն լնուլ զպակասութիւն թերութեան գործոյս բարեաց եւ առնուլ ի Տեառնէ վարձս յանանց բարեացն...։

Արդ` ով դասք մաքրագունից եւ ժառանգորդք գերաշխարհիկ կայենիցն, որք վայելէք ի հոգեկեցոյց բժշկարանէս, աւրհնութեամբ յիշատակաւ յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս զստացող գրոցս զԳրիգոր եւ զընկեր նորին զՅովհաննէս, որ ի չքաւոր աղքատութենէ բաւական արար մեզ զնիւթ եւ զծախս, եւ զհայր Մեղիտէ եւ զԳրիգորիս, որոց հրամանաւ եւ խնամաւք աւարտումն եղեւ ոգէշահ եւ բարեբեղուն եւ հոգիաւանդ կանոնացս, եւ զտէր Խաչիկ, որ յերկար ժամանակ անարատ սիրով եւ յաւժար կամաւք զաւրինակս ընծեռեաց։ Եւ զիս զՅովհաննէս զվերջինս ի գրչաց եւ զառաջինս ի պարտաւորաց, որ նշդեհութեամբ աշխատեցայ եւ յարմարեցի խոշորագունիւքս, սակաւ յիշման արժանացուցէք...»[1]։

Ձեռագրում սովորաբար հապավված են գրված աստուած, Քրիստոս Յիսուս բառերը, այլ բառեր էլ կան, բայց շատ քիչ։ Երբեմն թիւն վերջավորություն ունեցող բառերը առանց նշանի հապավված են թին. օրինակ՝ շարադրութին։ Շատ հաճախ ե-ի փոխարեն գործածում է ե, կամ ընդհակառակը. օրինակ՝ եկեղեցւոյ, թե, եթե, փոխանակ եկեղեցւոյ, թէ, եթէ: Այստեղ գրիչը անհետևողական է։ Ձեռագրում չեն օգտագործված օ և ֆ տառերը։ Գրիչը անհետևողականություն է հանդես բերել ղ և լ տառերի գործածության մեջ, հաճախ գրում է, օրինակ, փայղակ, այղ, այղում, իսկ ավելի հաճախ այլ, այլում: Մի երկու բառ՝ աստիճան, ուրկուն գործածված են հնագույն արտասանությամբ. օրինակ՝ աշտիճան, ուրկուն: Ձեռագրում մեծ մասամբ չի պահվել բառավերջի յ տառը. օրինակ՝ գրում է ի վերա։ Բնագրում, բառամիջում երբեմն գործածում է ը տառը. օրինակ՝ պահըս։ Ձեռագրում գործածված է ստորակետ, կետ, վերջակետ. հատկապես առաջինը մեծ մասամբ դրված է բառի վերևում, տողամեջ։ Ձեռագիրը բառանջատում չունի։ Մի շարք էջերում կան բաց թողնված բառեր կամ առանձին բառերի ուղղումներ, կու-

[1] Այս հիշատակարանն ամբողջությամբ նախապես հրատարակվել է երկու անգամ (տես Ն. Ակինյան, Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց յաղագս կարգաց եկեղեցւոյ, Վիեննա, 1930, էջ 96—103. և Գ. Հովսեփյան, Յիշատակարանք, Անթիլիաս, 1951, էջ 259—264)։

*տարված աջ կամ ձախ լուսանցքներում։ Դրանցից մի մասը կատարել է գրիչը (էջ 46ա)։ ըստ երևույթին ընդօրինակելուց հետո ձեռագիրը սրբագրել են, իսկ որոշ ուղղումներ, թեև տեղին, կատարել են ուրիշները, հետագայում (էջ 32ա—38ա, 48ա և այլն)։ Ձեռագրում ավելորդ կամ ուղղվելիք տառը գրիչը հանում է ՛ նշանով, իսկ բառերը՝ վերևից և ներքևից կետեր նշելով։ Ձեռագրի կազմի քայքայված լինելու պատճառով որոշ թերթեր պոկվել են և հետագա կազմողները առանց հոգ տանելու թերթերի հերթականության մասին, դրանք կարել են ոչ իրենց, այլ պատահական տեղում. օրինակ՝ ձեռագրում նման թերթերը գնում են այս հերթականությամբ՝ 51, 52, 53 կամ 59, 60, 61, մինչդեռ բնագրի իմաստի շարադրությունը պահանջում է 52, 53, 51 կամ 60, 61, 59 հերթականությամբ։ Կանոնախմբի ցանկը «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոցն» վերնագրով գտնվում է ձեռագրի 6ա—7ա էջերում, առարկայական ցանկը (անխորագիր)՝ 7ա—18ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 18բ—318բ էջերում։*

*2.* B. *№ 6409, Կանոնագիրք. թերթեր՝ 139. մեծություն՝ 25×16,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ սկզբից և վերջից կան ընկած թերթեր, էջերի վերջավորությունները մաշված, վերանորոգված. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝* XIII *դար։ Ձեռագրում կանոնախմբերի ցանկը ընկած է։ Առարկայական ցանկի սկիզբը նույնպես ընկած է, իսկ մնացածը գտնվում է 1ա—9բ էջերում, Կանոնագիրքը՝ 12ա—137բ էջերում։*

*Ունի լավ ընթերցումներ, եղած սխալ ընթերցումները նախագաղափար օրինակից են գալիս, գուցե և հնից։ Ձեռագրի տարբեր էջերի լուսանցքներում կամ տողամեջ (էջ 21բ, 22բ, 23ա, 24աբ, և այլն) կան առանձին բառերի և տառերի ուղղումներ, կատարված գրչի կողմից. թերևս դրանք սրբագրություններ են։ Այս ձեռագիրը ևս չունի օ և ֆ տառերը։ Է տառի փոխարեն մեծ մասամբ գործածում է Ե, օրինակ՝* եթե, թե, զաւշաքաղութիւնե *և այլն։ Անհետևողական են գործածված ղ և լ տառերը։ Բառավերջի յ տառը ևս հազվադեպ է գրվում, իսկ* ատինանը՝ աշտինան։

*3.* C *№ 8926, Կանոնագիրք, Դատաստանագիրք և կանոնական այլ նյութեր. թերթեր՝ 370. մեծություն՝ 25,7×19,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ կան պատառոտված էջերի նորոգումներ, կեղտոտ էջեր՝ 51բ, 52ա և այլն, դատարկ էջեր՝ 1աբ, 13ա—15բ, 369բ, 370աբ. տեղ, ժամանակ՝ անհայտ. գրիչ Եղիազար դպիր. ժամանակ՝* XV—XVI *դդ.։*

Հիշատակագրություն 1*)* էջ 71բ. *«Ցայսքան տեղիս (իմա Անտիոքի ժողովի կանոնախումբ — Վ. Հ.) ոչ ուղիղ գնան համարագիր մեծ ցանկին՝ ԼԴ ԼԴ, ՃԾԲ ՃԾԲ, ՃԿԵ ՃԿԵ, ՄԾԸ, Շ Շ, ՁԿ, ՊԲ ՊԲ»։ 2) էջ 72ա. «Մի զալրասցիս վասն թիւրութեան համարացս գծողիս, բազում աշխատեցայ և ոչ եղև հնար ուղղելոյ, քանզի մեծ ցանկն ի վերայ այսմ աւելի և պակաս համարացս է շինեալ»։*

*2աբ էջերում. «Այս ինչ կայ ի գիրս կանոնացս» վերնագրի տակ, այբուբենական կարգով, նշված է կանոնախմբերի ցանկը, առարկայական ցանկը՝ «Կարգադրութիւն գլխոց կանոնացս համայձայութենէ (*sic*) վասն պէսպէս խնդրոց» վերնագրով՝ 2բ—12բ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 30ա—210ա էջերում։ Ձեռագրում նկատվում են սրբագրության հետքեր, որ կատարել են գրիչը և ուրիշները (էջ 47բ, 55բ, 65բ, 66ա, 71ա, 83ա, 114ա, 123աբ և այլն)։*

4. D. № 795, Կանոնագիրք, Դատաստանագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 371. մեծություն՝ 26,4×19,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն, երկսյուն. վիճակ՝ կան կեղտոտված (129բ), վերանորոգված (127բ, 130ար և այլն) էջեր, վերջին մի քանի թերթերը ցեցակեր, դատարկ էջեր 1աբ, 370ա—371բ, որոշ լուսանցքներում կան առանձին նշումներ՝ 185բ, 217բ էջերում և այլն. տեղ՝ անհայտ. գրիչ՝ Եղիազար (Կանոնագրքի), Գասպար (Դատաստանագրքի). ժամանակ՝ 1618 թ.։ Կանոնագիրքը առանց ցանկերի գտնվում է 17ա—191ա էջերում։ Գործածում է աւ, գրիչը անհետևողական է ղ և լ տառերի գործածության մեջ։ Պատահում են սրբագրության դեպքեր՝ գրչի և ուրիշների կողմից կատարված։

5. E № 2635. Կանոնագիրք, Դատաստանագիրք և կանոնական այլ նյութեր. թերթեր՝ 261. մեծություն՝ 25,5×19,4. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ բավարար, կազմը պոկված, դատարկ էջեր 14բ—15բ, 260բ. գրիչ՝ Սարգիս. տեղ՝ Խոտանան գյուղ («ի յերկիրս Եճանանն»՝ Սյունիք). ժամանակ՝ 1635 թ.։ Կանոնախմբերի ցանկը՝ «Այս ինչ կայ ի գիրս կանոնացս» վերնագրով (այբբենական կարգով) գտնվում է 1աբ էջերում. առարկայական ցանկը՝ «Կարգադրութիւն գլխոց կանոնացս համաձայնութեան վասն պէսպէս խնդրոց» վերնագրով, 1բ—10բ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 16ա—135բ էջերում։ Կանոնախմբերը վերնագրերի մոտ հերթական համարներ չունեն։ Կանոնախմբերի առաջաբանները երբեմն համարակալված են որպես կանոնական հոդվածներ։ Ձեռագիրը գրված է գեղեցիկ և մաքուր, կան հատ ու կենա սխալներ, սակայն սրբագրված (էջ 7բ, 53ա)։ Գրիչը գրում է o, բայց գերակշռում է աւ-ը։

6. F. № 6496. Կանոնագիրք, Դատաստանագիրք և կանոնական այլ նյութեր. թերթեր՝ 424. մեծություն՝ 25×19. նյութ. թուղթ. գիր՝ բոլորագիր. երկսյուն. վիճակ՝ վերջից ընկած թերթեր, վերջին երկու թերթեր պոկված են և եզրերը մաշված, կան ցեցակեր էջեր։ Բնագրում տեղ տեղ բաց են թողնված առանձին հատվածներ, գրիչը այդ արել է հետևելով նախագաղափար օրինակին. «Թողութիւն արարէք եղբայրք ա. օրինակն բնաւին չկայր, ա. տեղ տեղ թողած էր, ես այլ թողի, ողջ լերուք» (էջ 423բ), 18բ էջը դատարկ. տեղ՝ Ագուլիս («ի թաղս Խոզաձրոյ»). գրիչ՝ Գրիգոր. ժամանակ՝ 1637 թ.։

Հիշատակարան 1) էջ 37բ—38ա, ներքևի լուսանցքում. «Անմեղադիր լերուք եղբարք գրոյս սղալանացն, որ օրինակն երկու էր՝ ա. նոր էր, ա. հին, նորն ողալ էր, հինն եղծած էր»։

2) էջ 110բ—111ա, ներքևի լուսանցքում. «Անմեղադիր լերուք խոշորութեան և սղալանաց գրոյս եղբարք, որ օրինակն երկու էր՝ ա. նոր էր, ա. հին, նորն խիստ սղալ էր, հինն խիստ խառնաբրթոշ էր. ինչպէս որ մածունն, թանն, չորաթանն խառն լինի, ինչպէս չօկուի, սոյնպէս այս օրինակս, հազիւ կարացայ չօկել, իմ ստուգութիւնն մոռացայ, դու ներեայ իմ սղալանացս, աղիղ տէրտէրս»։

3) էջ 222բ—223ա. «Ո՞վ ընթերցօղք և լսողք յորժամ ընթեռնուք միտ դիք իմոյ բանիս, վասն օրինակի գրչիս, նախ եւ առաջին պատճառն՝ օրինակն Բ էր. երկրորդ՝ ա. հին, ա. նոր, երրորդ՝ նորն բնաւ չիք ստուգութիւն. չորրորդ՝ հինն բնաւ չիք սղալութիւն, հինգերորդ՝ հինն ամենևին եղծած. վեցերորդ՝ թղթերն խառն. եւթներորդ՝ կանոնքն խառնաբրթոշ էր, ութներորդ՝ դատաստանագիրն առաւել խառն, քան կանոնի գիրն. իններորդ՝ հազիւ կա-

բացայ աւարտել կանոնիս շարադրութիւնս եւ ստուգութիւնս մոռացայ. տասներորդ՝ խոշորութիւն ի թղթէն է, սղալութիւն օրինակէն է. մետասաներորդ՝ բամբասեն զիս, թէ նրկարեաց գիրքն. երկոտասաներորդ՝ ոչ իմանան զիրս բանին եւ զպատճառսն յերկարելոյն. երեքտասաներորդ՝ առաւօտեան մինչեւ ցերորդ ժամն հազիւ կարէի այնչափ իրարս արկանել մինչեւ ցԱԺ-ն ժամն դրէի.... Որպէս սկիզբն արասցուք դատաստանի գրիս զխառնաբրթոշն որպէս իրարս արկից ոչ գիտեմ, այլ դայն գիտեմ, որ հոգին սուրբ Աստուած առաջնորդէ եւ աւգնէ ինձ եւ ես գրեցից անյապաղ եւ անտրտունջ ի փառս եւ ի պատիւ ամենասուրբ երրորդութեանն եղիցի. ամէն»։

4) էջ 423բ «Թողութիւն արարէք եղբայրք ա. օրինակն ընաւին չկայր, ա. տեղ-տեղ թողած էր, ես այլ թողի. ողջ լերուք»։

5) էջ 423բ—424բ»... Ես այնպէս վարանէի, կսկծալի արտասուէի, բայց մարդոյ ոչ յայտնէի, ես իմում անձին գլորէի եւ յԱստուած ապաւինէի, նոր աւրինակն ձախ կողմս դնէի ի գիրն հայէի շատ սխալ ի միջի տեսան[է]ի, յերեսս դարձուցանէի դէպի Աստուած ակնարկէի, հին օրինակն աջակողմս դնէի ստուգութիւն ի միջի տեսանէի սրտակաթ լինէի, բայց...[1] տեսանէի աւրինակին յետս դառնայի սիր[տս] խոցուով լցուէի, բայց հոգին սուրբ աղաչէի որ...[2] ամենայնի»։

Կանոնախմբերի ցանկը «Այս ինչ կայ ի գիրս կանոնացս» վերնագրով (այբբենական կարգով) գտնվում է 1աբ էջերում, առարկայական ցանկը՝ «Կարգադրութիւն գլխոց կանոնացս համաձայնութեան վասն պէսպէս խնդրոց» վերնագրով՝ 1բ—13ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 19ա—222բ էջերում։ Ձեռագրում տեղ-տեղ կան չընդօրինակված անգեր, որոնց մասին նշված է 4-րդ հիշատակարանում. դա արդյունք է այն ձեռագրի, որից կատարել են F ձեռագրի ընդօրինակությունը։ Ձեռագրի մի շարք էջերի լուսանցքներում կան ավելացումներ գրչի կողմից կատարված։ Կանոնախմբերը չունեն համարակալում։

7. G № 2655. Կանոնագիրք, Դատաստանագիրք և կանոնական այլ նյութեր. թերթեր՝ 303. մեծություն՝ 24×18,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ սկզբից և վերջից կան ընկած թերթեր, թուղթը խունացած է և կեղտոտ, կան ջնջումներ և վնասված էջեր, մի քանի անգամ վերանորոգված, տեղ-տեղ մելանը թափված. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ XVII դ.։ Կանոնախմբերի վերնագրերը և առարկայական ցանկերը, ինչպես նաև Առաքելական (Ա) կանոնախմբի մեծ մասը ընկած են։ Կանոնագիրքը գտնվում է 1ա—159բ էջերում։ Լուսանցքներում երբեմն հանդիպում ենք սրբագրություններ։ Ավելի շատ գործածում է օ տառը։ Անկանոն են և շատ հաճախ բացակայում են կանոնախմբերի և սրանց հոդվածների հերթական համարները։

8. H. № 2596. Կանոնագիրք. թերթեր՝ 238. մեծություն՝ 22,5×17,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. երկսյուն. ձեռագիրը վերանորոգված է, կան դատարկ էջեր՝ 1ա—3բ, 164աբ, 168աբ, 176ա, 238բ, իսկ 165ա—167բ և 169ա—177ա էջերը եղել են դատարկ, բայց հետագայում, ուրիշներ, նոտրագրով ավելացրել են պսակի վերաբերյալ մի բնագիր՝ «Կանոնք յաղագս պսակի արարեալ սրբոյն Իսրայէլի և Ոսկեբերանի» վերնագրով. գրիչ, տեղ՝

[1] Մեկ բառ եղծված։
[2] Մեկ բառ եղծված։

*անհայտ. ժամանակ՝ XVII դար։ Կանոնախմբերի վերնագրեր և տարեկալական ցանկեր չունի։ Առանձին էջերում հանդիպում ենք բնագրի սրբագրման դեպ-քերի։ Այս ձեռագիրն ընդօրինակված է G-ից։*

*9. I. № 8158, Կանոնագիրք. թերթեր՝ 338. մեծություն՝ 18,5×15,2. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ կազմը քայքայված, կան պոկված, ընկած, (սկզբից և միջից), պատառոտված, ցեցակեր թերթեր, մասնակիորեն վերանորոգված, առաջին ութ և վերջին ինը էջերը, որոնք համարակալված չեն. դատարկ են. գրիչ՝ Նիկոլ դպիր. տեղ՝ Կամենից. ժամանակ՝ 1635 թ.։ Ձեռագրում նախ դրված է տարեկալական ցանկը, սկզբից թերի, 1ա—11ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոցն» վերնագրով՝ 11բ—13ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 15բ—338ա։*

*10. J. № 3706, Կանոնագիրք. թերթեր՝ 232. մեծություն՝ 25,7×20. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. դատարկ էջեր՝ 1աբ, 231բ—232բ, հետագայում Կանոնագրքի առանձին հատվածների ընդգծում՝ կապույտ մատիտով, ձեռագրի 229բ—231ա էջերում XVIII—XIX դդ. կատարված նշում թե որ կանոնախումբը որ էջում է գտնվում։ Գրիչ՝ Խաչատուր դպիր. տեղ՝ Կամենից. ժամանակ՝ 1636 թ.։ Այս և նախորդ՝ I ձեռագրի գլխավոր հիշատակարանը նույնն է, միայն գրիչների, սրանց ծնողների, ուսուցիչների անունները և ժամանակն է փոփոխված։ Միևնույն տաղձի վրա գրել են երկու գրիչներն էլ։ Այն օրինակը, որից ընդօրինակել են IJ ձեռագրերը, նույնն է. այդ երևում է երկու գրիչների հիշատակարանից՝ «Այլ և յիշեցէք զտէր Ներսէս քահանայն, որ զօրինակս միով բանիւ շնորհեաց, վասն որոյ զվարձս ի Քրիստոսէ առցէ» (J, էջ 228բ, I, էջ 237բ)։ Տեր Ներսեսի օրինակը գուցե եղել է T ձեռագիրը, ընդօրինակված 1621 թ. դարձյալ Կամենիցում։ Ձեռագրի սկզբում գրված է տարեկալական ցանկը՝ «Ցանկն է միահամուռ կանոնիս» վերնագրով 2ա—13բ էջերում, իսկ կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ ե այս կարգ և չափ գլխոցն» վերնագրով՝ 13բ—14բ էջերում, այնուհետև հաջորդում է Կանոնագիրքը 15ա—229ա էջերում։*

*11. K. № 4403. Կանոնագիրք. թերթեր՝ 284. մեծություն՝ 19,5×14,3. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ կան պատառոտված էջեր, տեղ-տեղ մելանը թափված, դատարկ էջեր՝ 15բ, 282բ, 284աբ. գրիչ՝ Հովհաննես դպիր. տեղ՝ Ղարասու (սր. Օքսենտ). ժամանակ՝ 1647 թ.։ Նախ դըրված է տարեկալական ցանկը՝ «Ցանկ է [միահա]մուռ կանոնիս» վերնագրով 1ա—15ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւնք կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 16ա—17ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 17ա—281բ էջերում։*

*12. L. № 4631. Կանոնագիրք. թերթեր՝ 292. մեծություն՝ 14,2×10,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. երկսյուն. վիճակ՝ լավ է պահպանված, դատարկ էջեր՝ 1աբ. գրիչ՝ Հովհաննես աբեղա. տեղ՝ Ղարասու (սբ. Օքսենտ). ժամանակ՝ 1649թ.։ Նախ դրված է տարեկալական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնքիս» վերնագրով՝ 2ա—15ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագըրով՝ 15ա—16ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 16բ—290ա էջերում։*

*13. M. № 5782. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 319. մեծություն՝ 20,7×14,7. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. վիճակ՝ տեղ-տեղ*

կեղտոտված էջեր, լուսանցքներում երբեմն որոշ ուղղումներ, 319բ էջը դատարկ. գրիչ՝ Միքայել քահանա. տեղ՝ Ղարասու (սբ. Օքսենտ). ժամանակ՝ XVII դար[1]։ Նախ դրված է առարկայական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնիս» վերնագրով՝ 1ա—15ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը, անխորագիր, 15բ—16բ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 16բ—303 էջերում։ Այս և նախորդ երկու ձեռագրերում գլխավոր և չափածո հիշատակարանները նույնն են, միայն տարբեր է սրանց պատմական մասը։ Եվ քանի որ երեքն էլ ընդօրինակվել են Ղարասուում (սբ. Օքսենտ եկեղեցում), նշանակում է դրանք ընդօրինակվել են միևնույն ձեռագրից։

14. N. № 7580. Դատաստանագիրք և Կանոնագիրք. թերթեր՝ 147. մեծություն՝ 27×20. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ սկզբից, միջից և վերջից կան ընկած թերթեր, պատառոտված, կեղտոտված և վերանորոգված էջեր, տեղ-տեղ գիրը ջնջված. գրիչ՝ Ազարիա. տեղ՝ անհայտ. ժամանակ՝ 1651 թ.։ Կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով գտնվում է 59աբ էջերում. առարկայական ցանկը չի պահվել, ընկել է, հավանաբար վերջում լինելու պատճառով, իսկ Կանոնագիրքը՝ Շահապիվանի ժողովի կանոնախմբի ԺԵ հոդվածի վերջին մասից մինչև վերջ ընկած է, մնացածը գտնվում է 60ա—147ա էջերում։

15. O. № 3291. Դատաստանագիրք և Կանոնագիրք. թերթեր՝ 476. մեծություն՝ 20×15,5. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր, երկսյուն. վիճակ՝ կան մաշված էջեր, դատարկ էջեր՝ 1ար, 166բ, 476բ. գրիչ՝ Ազարիա դպիր և Հովհան քահանա, «որ բազում աշխատեցաւ ի վերայ կանոնգրքիս, Ե և Զ տետր տէր Յովհաննն գրեաց»[2] (էջ 471ա). տեղ՝ Ջուղա. ժամանակ՝ 1654թ.։ Կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գըլխոյն» վերնագրով գտնվում է 167ա-168ա էջերում, առարկայական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնացս» վերնագրով ի տարբերություն մյուս ձեռագրերի, գտնվում է Կանոնագրքի վերջում՝ 441ա-457ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 168ա-469բ էջերում։ Առանձին էջերի լուսանցքներում, գրչի կողմից կատարված են ուղղումներ, այդպիսի մի բաց թողնված հատվածը (Նիկիայի ժողովի կանոնախմբի ԺԵ հոդված) ուղղելիս գրիչը 198ա էջի ներքևի լուսանցքում գրում է. «Թողութիւն արարէք հարք և եղբարք մոնթի դաս կուտալի Բ տող սխալեցայ»։

16. P. № 9298. Կանոնագիրք և կանոնական այլ նյութեր. թերթեր՝ 310. մեծություն՝ 20,3×16,2. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. վիճակ՝ կան քերված բառեր, տողեր 116ա, 126ա, 127բ, 133ա 159ա և այլն, պատառոտված էջեր, ջնջումներ, դատարկ՝ 1աբ, 286բ, 301բ. գրիչ, տեղ, ժամանակ՝ անհայտ. 310բ էջում 1662 թվականի հիշատակություն, նշանակում է ձեռագիրն ընդօրինակվել է մինչև 1662 թիվը, այլ խոսքով XVII դարում։ Կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով գտնվում է 2ա—3ա էջերում, առարկայական ցանկը՝ «Ցանկն է

[1] Ձեռագրի հիշատակարանում ժամանակի մասին կա հետևյալ տեղեկությունը. «Եղև գրաւ սուրբ գանձարանիս ի թվաբերութեանն հայոց ՌԺ (հաջորդ տառը՝ տասնավոր կամ միավոր և կամ երկուսն էլ չի գրված, բայց տեղը բաց է թողնված—Վ. Հ.)... ի հայրապետութեան տեառն տէր Յակոբ կաթուղիկոսին» (էջ 304աբ)։ Նշանակում է ձեռագիրն ընդօրինակվել է 1655—1680 թթ. շրջանում, Հակոբ Ջուղայեցու կաթողիկոսության օրով։

[2] Այսինքն ձեռագրի 215ա—239ա էջերը։

միահամուռ կանոնիս» վերնագրով, O ձեռագրի նման, գտնվում է Կանոնագրքի վերջում՝ 287ա—301ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 3ա—286ա էջերում։

17. Q. № 5894. Կանոնագիրք. թերթեր՝ 300. մեծություն՝ 18×14,5. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր, միասյուն, վիճակ՝ կան խունացած էջեր. դատարկ՝ 15բ էջը. գրիչ՝ Միքայել քահանա. տեղ՝ «ի յաշխարհս Ղրիմաց ի քաղաքն»[1]. ժամանակ՝ 1664 թ.։ Նախ դրված է առարկայական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնիս» վերնագրով՝ 1ա—14ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 14ա—15ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 16ա—299ա էջերում։ Ձեռագրում տեղ-տեղ բաց են թողնված առանձին բառեր, ըստ երևույթին նախագաղափար ձեռագրից այդ բառերը չեն կարողացել կարդալ։

18. R. № 2883. Կանոնագիրք. թերթեր՝ 208. մեծություն՝ 31,2×20,2. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ ձեռագրի թուղթը արդեն դեղնել է, կան դատարկ էջեր՝ 1ա—6բ, 199ա, 205ա—208բ. գրիչ՝ Հովհաննես աբեղա. տեղ՝ անհայտ. ժամանակ՝ 1665 թ.։ Կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ՝ և չափ գլխոյն» վերնագրով գտնվում է 7աբ էջերում, առարկայական ցանկ չունի, իսկ Կանոնագիրքը՝ 7բ—204բ էջերում։ Ձեռագրում հաճախ հապավման նշանը՝ պատիվը մոռացված է։ Շատ հաճախ շփոթված են ա և ս, ե և ն տառերը, ըստ երևույթին այս ձեռագիրը ընդօրինակվել է մի նոտրագիր ձեռագրից։ Բառերի աղճատումները այստեղ շատ են, նույն սխալ ընթերցումն են տալիս QR ձեռագրերը։ Կանոնախմբերի հոդվածները համարակալված չեն։

19. S. № 3097. Կանոնագիրք. թերթեր՝ 362. մեծություն՝ 20×14,8. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ կան դատարկ էջեր՝ 1աբ, 17բ—18բ 356բ—362բ. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ մինչև 1681 թ.։ Նախ դրված է առարկայական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնիս» վերնագրով՝ 2ա—15 էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 15բ—17ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 19ա—355բ էջերում։ Հաճախ բառերի հապավման նշանը՝ պատիվը չի նշված, ընթերցումներով ավելի մոտ է KLMQT ձեռագրերին։

20. T. № 9488. Կանոնագիրք. թերթեր՝ 369. մեծություն՝ 19,5×16. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ կան կազմահան, դատարկ էջեր՝ 18բ—22բ, պատառոտված և ապա վերանորոգված, ցեցակեր էջեր, մի շարք էջերում կան առանձին հատվածների մատիտով ընդգծումներ, նշումներ. գրիչ՝ Գրիգոր. տեղ՝ Կամենից. ժամանակ՝ 1621 թ.։ Նախ դրված է առարկայական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնիս» վերնագրով՝ 1ա—18ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 23ա—24բ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 25ա—367բ էջերում։ Գլխավոր և չափածո այն հիշատակարանները, որ գտնում ենք KLM ձեռագրերում, հանդիպում ենք նաև այստեղ, միայն փո-

---

[1] Բնագրում հաջորդ բառը՝ քաղաքի անունը բաց է թողնված։ Բնագրում գրված է «Ընդ հովանեաւ սուրբ Աւգուէնտին» (էջ 299բ), որը պետք է հասկանալ Ղարասու։ Նշանակում է M և Q ձեռագրերը ընդօրինակել է նույն Միքայել քահանան։ Քանի որ և չափածո և գլխավոր հիշատակարանը նույնն են, ինչ KLM ձեռագրերինը, բացառությամբ ժամանակի և գրչի մասին հիշատակության, կարող ենք եզրակացնել, որ KLMQ ձեռագրերը հավանաբար միևնույն օրինակից են ընդօրինակվել։

փոխված է գլխավոր հիշատակարանի պատմական մասը։ T ձեռագրից համանաբար ընդօրինակվել են $<\frac{II}{KLMSQ}$ ձեռագրերը։ Ձեռագրում նկատվում են սրբագրության հետքեր, կատարել են ջնջումներ և ավելացումներ։ Դրանք արել են գրիչը և ուրիշներ (61բ, 73ա, 85ա, 90բ, 93բ էջերը և այլն)։ Կատարված այդ ուղղումները անցել են այլ ձեռագրերի՝ IJKLMSQ։

21. U. № 3148. Կանոնագիրք. թերթեր՝ 188. մեծություն՝ 20,2×15. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ վերջից կան ընկած թերթեր, հետագայում կազմելու ժամանակ ձեռագիր թերթերը կտրելիս, վերևի և ներքևի լուսանցքները խորն են կտրվել. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ XVII դար ?։ Կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոցն» վերնագրով գտնվում է 1աբ էջերում, առարկայական ցանկը, անխորագիր՝ 1բ—8ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 8բ—188բ էջերում։ Գրիչը Լ-ի փոխարեն հաճախ գործածում է ղ։

Այս ձեռագիրը ընդօրինակված է A ձեռագրից։ Դա երևում է նրանից, որ A ձեռագրի 312ա էջի փոքրիկ հիշատակարանը, որն անմիջապես հաջորդում է Մելիտոն եպիսկոպոսի մի նամակին, նույնությամբ և միևնույն տեղում գտնվում է № 3148 ձեռագրում։

22. V. № 3099. Կանոնագիրք. թերթեր՝ 282. մեծություն՝ 19×14,5. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ սկզբից ունի ընկած թերթեր, վերանորոգված էջեր։ 99-րդ թերթը դարձյալ նոտրագիր, բայց գրել է հավանաբար մեկ ուրիշը։ Այդպես է նաև 12-րդ թերթը։ Դատարկ էջեր՝ 1ա—7բ, 13աբ, 274բ—282բ. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ մինչև 1667 թ.։ Նախ դրված է առարկայական ցանկը, սկզբից ընկած՝ 8ա—20բ էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 20բ—22ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 22ա—274ա էջերում։ Գրիչը Լ-ի փոխարեն հաճախ գործածում է ղ-ն։ V ձեռագրի գրչությունը շատ նման է S-ի գրչության, գուցե ընդօրինակել է միևնույն գրիչը։

23. X. № 449. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 254. մեծություն՝ 31,2×19,5. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. դատարկ էջեր՝ 1ա—5բ, 180բ, 210ա—254բ. այդ էջերից 210ա—217ա-ի վրա 1884 թ. մայիսի 30-ի թվով Մ. Սմբատյանցը թողել է մի հիշատակարան։ Վիճակ՝ կան վնասված էջեր, մելանը տեղ-տեղ ծակել է թուղթը. գրիչ՝ Գալուստ դպիր Ջուղայեցի. տեղ՝ Աստրախան. ժամանակ՝ 1757 թ.։ Նախ դրված է առարկայական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնքիս» վերնագրով՝ 6ա—13ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 13աբ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 13բ—178ա էջերում։

24. Y. № 3297. Կանոնագիրք և Դավիթ-բեկի պատմություն. թերթեր՝ 171. մեծություն՝ 21×17,3. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. դատարկ էջեր՝ 1աբ, 133ա, 136ա—137բ, 166ա—171բ։ Կանոնագրքի գրիչ՝ Վարդան վարդապետ. տեղ՝ Պետրպօլիս. ժամանակ՝ 1780 թ.։ Նախ դրված է առարկայական ցանկը՝ «Ցանկ է միահամուռ կանոնքիս» վերնագրով՝ 2ա—9ա էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 9աբ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 9բ—136բ էջերում։

Այս ձեռագիրը ամենայն հավանականությամբ ընդօրինակված է նախորդ՝ X ձեռագրից։

25. Z. № 7317. Կանոնագիրք. թերթեր՝ 334. մեծություն՝ 19,7×15. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. վիճակ՝ լավ է պահպանված, կան մի քանի կեղտոտված էջեր։ Կան ուղղումներ և ավելի ուշ շրջանում մատիտով կատարված բաց թողնված առանձին բառերի ավելացումներ։ Գրիչ՝ Հովհաննես սարկավագ. տեղ՝ անհայտ. ժամանակ՝ 1652 թ.։ Ձեռագիրը կազմելիս սկզբի էջերը սխալմամբ տեղադրել են վերջում, այդ պատճառով առարկայական ցանկը՝ «Ծանկ է միահամուռ կանոնքիս» վերնագրով դրված է 315ա—329բ էջերում, կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եդեալ և այս կարգ և չափ գլխոյն» վերնագրով՝ 329բ—331ա էջերում, Առաքելական (Ա) կանոնախմբի առաջաբանը և ցանկը՝ 331ա—334ա էջերում։ Կանոնագիրքը՝ 1ա—314բ էջերում։

26. W. № 3059. Դատաստանագիրք, «Գիրք Նոմոսի» և Կանոնագիրք. թերթեր՝ 465. մեծություն՝ 21,3×17. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր (XIX դար). միասյուն. գրիչ՝ Հովսեփ Տեր Հովսեփյան. տեղ՝ Թավրիզ. ժամանակ՝ 1843 թ.։ «Գիրք Նոմոսի»-ի վերջում (էջ 147բ) նշված է. «Հին գաղափար գրոյս գրեցեալ ի թուին ՌՃԲ (1653)»։ Այս տեղեկությունը արդյո՞ք վերաբերում է միայն Դատաստանագրքին, «Գիրք Նոմոսի»-ին, թե նաև Կանոնագրքին։[1]

Կանոնագիրքը գտնվում է ձեռագրի 148ա—428բ էջերում։ Ձեռագրի վերջում՝ 429ա—463ա էջերում՝ «Ծանկ համօրէն կանոնացս» վերնագրով, տրված է Դատաստանագրքի և Կանոնագրքի հոդվածների ցանկը, թե որ հոդվածը ձեռագրի որ էջում է գտնվում։ Դատաստանագրքի հոդվածների ցանկը (Ներածություն՝ Ա—Է + Դատաստանագիրք Ա—ՄԾԴ) 261 վերնագրերի տակ տրված է 429ա—434բ էջերում, «Գիրք Նոմոսի»-ն՝ 144 վերնագրերի տակ՝ 434բ—438բ էջերում. իսկ Կանոնագրքի յուրաքանչյուր կանոնախմբի հոդվածների ցանկը, որը, սովորաբար մյուս ձեռագրերում, գտնվում է յուրաքանչյուրն իր կանոնախմբից անմիջապես առաջ, տրված է վերջում, իրար հետևից, բայց առանձին-առանձին, 438բ—463ա էջերում։

Մինչև Հովհ. Օձնեցու կանոնախմբի հոդվածների ցանկը ներառյալ, կազմված է մյուս ձեռագրերի ցանկերին համապատասխան, իսկ դրանից հետո եղածը հետագայում կազմել են ուրիշներ, գուցե և W ձեռագրի գրիչը։ Ձեռագրում չի պահվել կանոնախմբերի ցանկ։

Հատված հիշատակարանից, էջ 464ա. «...զոր և սկսեալ ի 1843 ամի մարդեղութեան տեառն մերոյ վեցն փետրվարի[2] և աւարտեալ ի նոյն 1843 ամի և յուլիսի ամսոյ 21-ին, ի Դաւրէժ, առանց յաւելման կամ պակասեցուցման, զի ի յընդօրինակելն մեր տեսաք ինչ-ինչ վրիպակս և սխալանս, և ուրեք-ուրեք գեղջկական և աշխարհաբառբառս ի գործ եդեալ, անպատեհ վարկուցեալ ոչ կամեցաք զնոսին ուղղագրել և ըստ կարգի յօրինել յանիծից և ի նզովից հարցն սրբոց երկնչելով...»։

27. Ծ. № 3065. Կանոնագիրք. թերթեր՝ 228. մեծություն՝ 20,8×16,2.

---

[1] Ձեռագրի 109բ էջում, Դատաստանագրքից հետո, գրված է նախագաղափար ձեռագրի մի այլ հիշատակարանը. «Ի թուին ՌՃԲ (1653) գրեցեալ ի մարտի ամսոյ 10-ին»։

[2] «Վեցն փետրվարի» բնագրի տեղ լուսանցքում, ավելացրել է գրիչը։

նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ Կանոնագրքի սկզբի ընդարձակ մասը, ներառյալ մինչև Սարդիկեի ժողովի կանոնախումբը, ընկած է, դատարկ էջեր՝ 211բ—214բ։ Գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ XVIII դար ?։ Կանոնախմբերի ցանկ չունի. առարկայական ցանկը՝ «Ցանգ կրքոյս միահամուռ աստ եդաք, զի որոնեալ գտանիցիք համարովք, որ են այս» (այբբենական կարգով) վերնագրով գտնվում է ձեռագրի վերջում՝ 215ա—228ա էջերում։ Յուրաքանչյուր վերնագրի դիմաց հոդվածի համարները նշված են բուն արաբական թվանշաններով, թեև ձեռագրում հոդվածների համարները դրված են հայկական տառերով, օրինակ՝ «Ընդ արեւս պարտ է աղօթել \, VՐV» (էջ 215ա), այսինքն տես Ա, ՉԼԷ հոդվածները։ Կանոնագիրքը գտնվում է ձեռագրի 1ա—211ա էջերում։ Ուղղագրությունը այստեղ սովորականի նման չէ՝ կ-ի փոխարեն գրում է գ, օրինակ՝ կարգ-ի փխ. գարգ, բ-ն՝ պ-ը, բաշխեսցին-ի փխ. պաշխեսցին, դ-ն՝ տ, դրամ-ի փխ. տրամ և այլն։

28. ը № 1770. Զանազան նյութեր և Կանոնագիրք. թերթեր՝ 278. մեծություն՝ 18,4×14. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր և նոտրագիր. միասյուն. վիճակ՝ կան պատառոտված, կեղտոտված էջեր, վերանորոգված է, ընկած թերթերը նորից արտագրված 1731 թ. Հակոբ Ջուղայեցու կողմից (էջ 192բ)։ Կազմելու ժամանակ վերևի և ներքևի լուսանցքները սկզբի թերթերում կտրվել են, ունի պոկված թերթեր։ Դատարկ էջեր՝ 1ա—3բ, 12ա—16բ, 115աբ, 133բ—135բ, 193աբ, 124բ, 273բ—278բ. գրիչ՝ անհայտ. ժամանակ՝ XVII դար։ Ձեռագրի 10բ—11աբ էջերում տրված է ձեռագրի բովանդակությունը՝ «Ցանկ գլխոց երկու հատորի գրոյս, որոյ առաջի մասն են քարոզք և երկրորդն են հարցմունք, կանոնք այլև քարոզք և խրատք»։ Ձեռագրի 35ա—110բ էջերում գտնվում են Կանոնագրքի Ա—ԺԵ կանոնախմբերը միայն։ Առարկայական և կանոնախմբերի ցանկերը չեն պահվել։

29. û № 3141. Կանոնագիրք. թերթեր՝ 168. մեծություն՝ 21,3×17,3. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն, դատարկ էջեր՝ 155բ—168բ. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ XIX դար։ Կանոնախմբերի և առարկայական ցանկեր չունի։ Հոդվածների ընդհանուր համարները նշված են արաբական թվանշաններով, իսկ մասնավոր համարակալում չի դրված։ Սխալ ընթերցումներ և չիքեր անչափ շատ են։

Բ խմբի ձեռագրեր.

30. a. № 7615. Կանոնագիրք և կանոնական այլ նյութեր. թերթեր՝ 286. մեծություն՝ 18,5×13,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ սկզբից, միջից և վերջից կան ընկած թերթեր, կազմը քայքայված, կան եղծված տողեր, վերանորոգված է. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ XIV—XV դարեր?։ Հավանաբար ունեցել է կանոնախմբերի ցանկ, որը, սակայն, ընկած է. առարկայական ցանկի սկիզբը ընկած է, մնացածը գտնվում է 2ա—14բ էջերում։ Այս ցանկի վերջում գտնում ենք ցանկին վերաբերող հիշատակարան. «Գումարեցան ճառքս և կանոնքս և բովանդակեցան համարով ՄՂ և վկայութիւնք, որ աստի կան ՌՇԻԷ... ՊԱ թվին» (էջ 14բ)։ Կանոնագիրքը գտնվում է ձեռագրի 15ա—262ա էջերում։

31. b. № 8380. Կանոնագիրք. թերթեր՝ 266. մեծություն՝ 18,3×13,7. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. 1ա, 265բ, 266բ էջերում հետագայի զանազան նշումներ, դատարկ՝ 266ա. գրիչ՝ Գրիգոր երեց. տեղ՝ Կոլոնիա («որ այժմ ասի Ղարայհիսար»). ժամանակ՝ 1632 թ.։ Ունի կանոնախմբերի

երկու ցանկ՝ ա. «Ցանկ սուրբ գրոցս» վերնագրով՝ 1բ—2բ էջերում գրել է մեկ ուրիշը, նոտրագրով. բ. անխորագիր 3ա—4ա էջերում, գրել է գրիչը։ Ձեռագրերում եղած կանոնախմբերի հաջորդական դասավորությունը ավելի համապատասխանում է առաջին ցանկին։ Ըստ երևույթին ձեռագիրն ընդօրինակելուց հետո մեկ ուրիշը կանոնախմբերի հաջորդականությունը նույնությամբ նորից գրանցել է առաջին դատարկ էջերում. Կանոնագիրքը գտնվում է 14ա—262բ էջերում. առարկայական ցանկը, անխորագիր՝ 4ա—14ա էջերում։ Այս ձեռագրում թեև երբեմն հանդիպում ենք ընտիր ընթերցումների, բայց ընդհանուր առմամբ աղավաղումները շատ են։ Բառամեջ հաճախ գործածում է յ տառը, օրինակ՝ մայրայքաղաք։ Բարբառային արտասանությամբ միշտ գրում է ծանար, փոխանակ ծանր։ Կան անուշադիր ընդօրինակության դեպքեր, օրինակ՝ վըռիւ փխ. վճիռ (էջ 255, տող 12), խռնել, փխ. առնել (էջ 214, տող 6) և այլն։

32. c. № 8964. Կանոնագիրք, Դատաստանագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 250. մեծություն՝ 18×13,5. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ ունի եղծված տողեր, որոնք նորոգված են, դատարկ էջեր՝ 14բ, 191ա—192ա, 203բ, 207բ. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝ XIV—XV դարեր?։ Կանոնախմբերի ցանկը (անխորագիր) գտնվում է 1ա—2բ էջերում։ Ցանկի վերջում կա այսպիսի հիշատակություն. «Միաբան գումարեցաւ գլուխ կանոնացս համարով ՀԸ[1]։ Եւ բովանդակ վկայութիւնքն որ աստ կան միաբան ՌՇԻԷ ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ» (էջ 2բ)։ Առարկայական ցանկը (անխորագիր) գտնվում է 2բ—14ա էջերում։ Ցանկի վերջում կարդում ենք այսպիսի մի հիշատակություն ևս. «Գումարեցան ճառքս և կանոնքս և բովանդակեցան համարով ՒԾԴ. և վկայութիւնք որ աստ կան ՌՇԻԷ» (էջ 15ա)։ Կանոնագիրքը գտնվում է 15ա—191ա էջերում։ Ընթերցումներով մոտենում է Bd ձեռագրերին։ Աթանասի կանոնախմբի ցանկում թեև մի քանի վերնագրերի հաջորդականությունը տարբեր է Կանոնագրքի ունեցած համապատասխան ցանկից, բայց բուն ձեռագրում այդ հոդվածների հերթականությունը համընկնում է Կանոնագրքի ունեցածին։

33. d. № 2676. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 221. մեծություն՝ 27,5×18,7. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ վերջից կան ընկած թերթեր, կեղտոտված և դանակահար էջեր, նորոգված 1750 թ. գրիչ՝ Աստվածատուր. տեղ՝ անհայտ. ժամանակ՝ XVII դար։ Կանոնախմբերի ցանկը՝ «Աւգնեա Յիսուս կարգ և սահմանադրութիւն կանոնաց կարգեալ ի սրբոց առաքելոց և հայրապետացն. լաւ և ընտիր և հաց անմահական, ով ոք կարող է ճաշակել» վերնագրով գտնվում է 1ա—2ա էջերում, ուր նշված են 76 կանոնախմբերի վերնագրեր, բայց բուն ձեռագրում ընդօրինակված են 38 կանոնախումբ՝ ներառյալ «Կանոնք Յոհաննու Մանդակունոյ Հայոց կաթուղիկոսի գլուխս Ը» կանոնախումբը։ Այս ցանկի վերջում սրան և առարկայական ցանկին վերաբերող մի հիշատակություն կա՝ «Միաբան գում[արեցաւ] գլուխ կանոնացս համարով ՀԸ և բովանդ[ակ] վկայութիւնք, որ աստ կան միաբան ՌՇԻԷ ի փառս Աստուծոյ մեր[ոյ]»[2]։ Վերջինիս

[1] Այս ցանկում թեև նշված է 78 կանոնախմբի վերնագիր, բայց բուն ձեռագրում ընդօրինակված է մինչև «ԽԶ. Սրբոյն Եղիշէի ի կանոնաց գրոց, վասն դիւահարաց» կանոնախումբը ներառյալ։

[2] Էջ 1ա։ Այստեղ թեև նշում է ՀԸ, բայց ցանկում նշված է ՀԶ վերնագիր։

նաչորդում է դարձյալ առարկայական ցանկի վերաբերյալ մի ծանուցում՝ «Նախադրութիւն կարգեալ կանոնացս կարմիր և Ֆուխ գրով է, կարմիրն ճառին համարքն է[1] և թուխն քանիաւնութիւնք վկայութեան[2] կանոնացս է» (էջ 2բ)։ Այս հիշատակությունը սես նաև նախորդ C ձեռագրում, էջ 2բ։ Այնուհետև գտնվում է առարկայական ցանկը. «Արդ այս ինչ կարգեալ և եղեալ է աստ» վերնագրով՝ 2բ—10ա էջերում, այդ ցանկը ավարտվում է հետևյալ հիշատակությամբ. «Գումարեցան ճառքս և կանոնքս և բովանդ[ակ]եցան համարով ՄՂ և վկայութիւն որ աստ կան ՌՇԻէ» (էջ 10ա)։ Իսկ Կանոնգիրքը տեղավորված է ձեռագրի 10ա—147ա էջերում։

34. Ե. № 783. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 344. մեծություն՝ 21,6×14,8. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր (Կանոնագիրքը), բոլորագիր, մինչև 253ա էջը. երկսյուն, 255ա—289բ էջերը միասյուն, մնացածը դարձյալ երկսյուն. վիճակ՝ կան պատռված թերթեր, դատարկ էջեր՝ 1ա—4բ, 198բ—199բ. 201ա—204բ, 208բ—312բ, 333բ—334բ, 341ա—344բ. գրիչ՝ Աբրահամ երեց, տեղ՝ ոչ. Պարսամի վանք. ժամանակ՝ 1605 թ.։ Կանոնախմբերի ցանկը (անխորագիր) գտնվում է 5աբ էջերում, ունի 46 կանոնախմբերի վերնագրեր, այդքան էլ կանոնախումբ բուն ձեռագրում։ Առարկայական ցանկը (անխորագիր) գտնվում է 6ա—13բ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 13բ—198ա էջերում։

35. Լ. № 8006. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 317. մեծություն 21,6×14,5. նյութ՝ թուղթ՝ առաջին երկու և 294—300, 312—315 թերթերը՝ կապտավուն. գիր՝ նոտրագիր. միասյուն. վիճակ՝ ձեռագրում կան պակաս տեռեր, դա արդյունք է ընդօրինակած ձեռագրի պակասավոր լինելուն. գրիչը նման տեղերը նկատելով ձեռագրի տարբեր էջերի լուսանցքներում նշում է՝ «Բ թուղթ անկեր է» (էջ 229ա), «Բ թուղթ այլ ի հոս ընկեր է» (էջ 235ա) «Բիչ մի պակաս կայ» (էջ 239բ), «Պակաս է» (էջ 258ա) և այլն, նորոգված է, կան դատարկ էջեր՝ 19բ—20բ, 300բ, 303աբ. գրիչ՝ Սարգիս. տեղ՝ Ղրիմ. ժամանակ՝ 1611 թ.։

Հիշատակարան 1) էջ 299բ. «Արդ՝ այս գեղեցկայարմար տառիցըս ցանկացող եղեալ ես թըշուառականս և ամենամեղըս և եղկելի Սարգիս, սակայն անմըտաւարժ վարդապետական արհեստից կամեցայ ըստանալ զսայ ինձ մըխիթարութիւնն մարմընոյ և լիշատակ հոգոյ. սակըս ախքատութեանն դգըրչութեանն արուեստաւորոք ոչ կոչեցի, ի պէտըս հարկիս ալսորիկ ես ինձէն իմովըս անլօժարութեամբ և մեծաջան աշխատութեամբ ըսկիզբն արարի յերկուց ընտիր օրինակաց ոչ ածեալ ըզմտաւ դտըխմարութիւնն գրչութեանն, զի սէր և լամենայնի յաղթէ...»։

2) էջ 2բ. «Այս կանոնգիրքըս գըրվիլ է Ղրիմ թվին Հայոց ՌԿ (1611)-ին, մէկ կանոն ալ տեսի գրվիլ է ՌՃԻԹ (1680) թվին Ղրիմ, Յակոբ վարդապետ Ղըըմեցի աշակերտ Գրիգոր վարդապետի և քաջ դիտապետի Եզընկացոյ»։

3) էջ 105ա, ձախ լուսանցքում կարմիր թանաքով. «Այս Գ գլուխս[3] ոչ ցանկն կայ և ոչ Ղարասուի կանոնքն»։

4) I ա. պահպանակ «Այս կանոնագիրք|ս| գուչէի ի գուչ կու թափլէին անարգ ||| և ես առի սիրով կու |||»։

[1] Իմա առարկայական ցանկի վերնագրերի համարները։

[2] Իմա կանոնախմբերի հոդվածների ընդհանուր համարները։

[3] Խոսքը վերաբերում է Աթանասի կանոնախմբի վերջում մի քանի ձեռագրերում ավելացված երկու հոդվածներին (տես համապատասխան ծանոթագրությունը)։

5) I բ. պահպանակ. «Թվին ՊԴ (1355) գրեցաւ գայս կանոն Մարսըվանի ||| գեղի Աստուածածնայ վանքըն, Ղրիմ բերի չինքսէցի առաջնորդ Ըստէֆան? վարդապետին տըվի վասըն յիշատակ»[1]։

Ձեռագիրը թեև գեղեցիկ գրչություն չունի, սակայն հաճախ տալիս է լավ ընթերցումներ։ Ունի կանոնախմբերի երկու ցանկ՝ առաջինը, որը գտնվում է 1ա—1դ էջերի վրա, և անխորագիր է, կազմվել է հետադայում և ձեռագիրը կազմելիս, թերթերը ետ և առաջ են դրված. երկրորդը՝ «Այս կանոնքըրքիս համայն ցանկն է» վերնագրով գտնվում է 1ե—2ա էջերում, առարկայական ցանկը (անխորագիր)՝ 3ա—19ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 21ա—299բ էջերում։ Կանոնախմբերի ցանկում, չհաշված Հովհ. Օձնեցու հիշատակարանը, նշված է 45 կանոնախմբերի վերնագրեր, իսկ ձեռագրում պահվել է 44, չի ընդօրինակվել «Աւանդութիւնն Հրէիցն վասն ողորմութեանն» կանոնախումբը[2]։ Ձեռագրում ծառն բառը միշտ գրված է ծառրր։

36. g, № 5148. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 275. մեծություն՝ 21,3×15,2. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր (զանազան). երկսյուն. վիճակ՝ կան ընկած, պոկված թերթեր, դատարկ էջեր՝ 170բ, 276բ. ձեռագրում կան պակաս տեղեր, որ արդյունք է նախագաղափար օրինակի պակասավոր լինելուն. գրիչը 159ա էջի լուսանցքում գրում է. «Թուի թէ այս տեղս պակաս է և յօրինակէն է որ չմեղադրես»։ Գրիչ՝ Կարապետ Եվդոկիացի, Ստեփաննոս. տեղ՝ Եվդոկիա. ժամանակ՝ 1618 թ.։ Կանոնախմբերի ցանկը՝ «Ցանկ գրոցս Աւգնեա Ցիսուս» վերնագրով գտնվում է 1աբ էջերում, առարկայական ցանկը (անխորագիր)՝ 2ա—9բ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 9բ—169բ էջերում։ Ունի այն սխալ ընթերցումները, որ տալիս է e ձեռագիրը։

37. h. № 3368. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 279. մեծություն՝ 19,5×14,5. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ կան պոկված, պատառոտված, ընկած թերթեր, դատարկ էջեր՝ 216բ—220ա. գրիչ՝ Կիրակոս. տեղ՝ Թեքիրդաղ. ժամանակ՝ 1639։ Կանոնախմբերի ցանկը ընկել է, առարկայական ցանկը (սկզբից ընկած) գտնվում է 1ա—5բ էջերում, իսկ Կանոնագիրքը (սկզբից ընկած)՝ 6ա—216ա էջերում[3]։

38. i. № 656. Կանոնագիրք. թերթեր՝ 122, մեծություն՝ 19,5×14,4. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. դատարկ էջեր՝ 1ա—5բ, 110ա, 111ա—122բ. գրիչ՝ Հովհաննես. տեղ՝ անհայտ. ժամանակ՝ 1661 թ.։ Կանոնախմբերի ցանկը՝ «[Ն]ախադրութիւն կանոնաց եղեալ այս չափ և այս չափ գլխոցն» վերնագրով գտնվում է 6աբ էջերում, առարկայական ցանկը (անխորագիր)՝ 6բ—12բ էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 12բ—109բ էջերում։ Կանոնախմբերի ցանկում նշված է 40 կանոնախմբի վերնագիր, իսկ ձեռագրում պահվել է մինչև 28-րդ՝ «Կանոնք Կիւրղի Աղեքսանդրացւոյ, գլուխ Ե» կանոնախումբը, մնացածը ինչ-ինչ պատճառներով չի ընդօրինակվել։ Նույն բանը տես նաև t ձեռագրում։

39. k. № 654. Կանոնագիրք. թերթեր՝ 292. մեծություն՝ 20×14,4. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. վիճակ՝ դատարկ էջեր՝ 1ա—5բ, 287ա—292բ.

[1] Վերջին երկու հիշատակարանները հավանաբար չեն վերաբերում I ձեռագրին։

[2] Դրա փոխարեն ձեռագրի 304ա—312ա էջերում գտնվում է Հակոբ Ղրիմեցու «Ցագադըս պըսակի ամուսնացելոց» բնագիրը, իսկ 294ա—297բ էջերում Շահապիվանի ժողովի կանոնախմբի առաջաբանը (սկզբից թերի) և Ա հոդվածը (վերջից թերի)։

[3] Այս ձեռագիրը նկարագրված է Ֆ. Ն. Ֆինկի կողմից (տես «Ցուցակ Տփխիսեցի Արդար Ցովհաննիսեանի հայերէն ձեռագրերի», Լայպցիկ, 1903, № 1, էջ 1—39։

*գրիչ՝ Աստվածատուր քահանա. տեղ՝ Բերիա. ժամանակ՝ 1671 թ.։ Կանոնախմբերի և տարեկալական ցանկերը չեն ընդօրինակված։ Այս ձեռագրում ընդհանուր առմամբ շարահյուսությունը պարզեցված է։ Կանոնախմբերին նախորդող հոդվածների ցանկերը էականորեն տարբերվում են Հովհաննես Օձնեցու կազմածից։ Ճիշտ նույն ձևով են նաև* mps *ձեռագրերը։ օ-ի փոխարեն սովորաբար գրված է* ա.։ *Այդ բանը հանդիպում ենք նաև* ms *ձեռագրերում։*

*40.* l. *№ 8938. Կանոնագիրք, Դատաստանագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 498. մեծություն՝ 21,1×15. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. դատարկ էջեր՝ 12բ, 219ա—220բ, 245բ, 295բ, 309բ—310բ, 489աբ, 498աբ. գրիչ՝ Ներսես. տեղ՝ անհայտ. ժամանակ՝ մինչև 1685 թ.։ Կանոնախմբերի ցանկը «Շարադրութիւն կանոնաց և եդեալ այս չափ և այս չափ և կարգեալ գլխոցն» վերնագրով գտնվում է 1աբ էջերում, առարկայական ցանկը (անխորագիր)՝ 1բ—10ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 10ա—218բ էջերում։ Կանոնախմբերի ցանկում նշված է 40 վերնագիր, իսկ բուն ձեռագրում գտնում ենք 63 կանոնախումբ։ Ձեռագրում շատ հաճախ գործածված է բառամեջ* յ *տառը, օրինակ՝* մայրայքաղաք, մայրեբերն, *հաճախ հանդիպում ենք սխալ ընթերցումների։ Բարսեղ Կեսարացու կանոնախմբի ցանկը նոր է կազմվել և պարզեցված է. այդպես է նաև* ho *ձեռագրերում։*

*41.* m. *№ 2677. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 306. մեծություն՝ 28,5×20,5. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր, 223ա էջից նոտրագիր. միասյուն. վիճակ՝ 68—70 թերթերը ներքևի լուսանցքից խորը կերպով կտրված. գրիչ՝ Ավետիք քահանա. տեղ՝ Բերիա. ժամանակ՝ 1697 թ.։ Նախ գրված է առարկայական ցանկի բովանդակությունը 26 վերնագրով՝ 1աբ էջերում, ապա կանոնախմբերի ցանկը՝ «Ցանկ գլխավոր կանոնացս» վերնագրով՝ 2ա—3բ էջերում, իսկ տնտուհետև առարկայական ցանկը «Ցրուացանկ է սրբոց կանոնացս» վերնագրով՝ 3բ—19ա էջերում, համապատասխան 1աբ էջերում նշված բովանդակության վերնագրերին։ Այդ ցանկը տարբերվում է մյուսներից։ Կանոնագիրքը գտնվում է 19բ—283բ էջերում։*

*42.* n. *№ 778. Կանոնագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 410. մեծություն՝ 25,8×19,4. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. միասյուն. վիճակ՝ կան պոկված թերթեր՝ 34, 35. դատարկ էջեր՝ 34ա, 404ա—410բ, առանձին հատվածներ ընդգծված են մատիտով. գրիչ՝ Մկրտիչ. տեղ՝ Լով. ժամանակ՝ 1635թ.։*

*Հիշատակարան, էջ 291բ, «...Զի որք կարդալով օգտիք և կամ աւրինակէք ի սմանէ՝ մի մոռանալք յիշել ի Քրիստոս զկառաչ անուանեալ տէր Զաքարիայն, որ բազում աշխատութեամբ և ջատագովութեամբ պարզեաց և սրբագրեաց զկանոնս, և յաւելեալ ի նոյն ցանկ գեղեցիկ նորայարմար ի վերայ այբուբենի, վասն դիւրաւ գտանելոյ կամեցողին զխնդրելին իւր...»։*

*Նախ դրված է առարկայական ցանկը՝ «Ցանկ է կանոնի» վերնագրով 1ա—34բ էջերում։ Այն կազմված է այբբենական կարգով և տարբերվում է մյուսներից։ Ապա հաջորդում է կանոնախմբերի ցանկը «Շարադրութիւն կանոնաց եդեալ և այս կարգ և չափ գլխոցն» վերնագրով՝ 35բ—36բ էջերում։ Կանոնագիրքը գտնվում է 37ա—289բ էջերում։ Առանձին կանոնախմբերի հոդվածների ցանկերը, որոնք անմիջապես նախորդում են կանոնախմբերին, երբեմն կազմված են նոր և ընդարձակ ձևով (Աթանասի կանոնախումբ)։ Այս ձեռագիրը միանման ընթերցումներով ավելի մոտ է* U *ձեռագրին։ Ձե-*

ռագրում խտրություն չի դրվում աւ-ի և օ-ի միջև, գործածված են երկուսն էլ։ Աստիճան-ը միշտ գրվում է հնագույն ձևով՝ աշտիճան։

*43. օ. № 660. Կանոնագիրք. թերթեր՝ 270. մեծություն՝ 17×11,8. նյութ՝ մագաղաթ. գիր՝ բոլորագիր. երկսյուն. վիճակ՝ կազմը պոկված, սկզբի մեկ պրակը՝ 14 թերթ ընկած, մագաղաթը տեղ-տեղ դեղնած, «Կանոնք տեառն Սիմէոնի Աղուանից կաթողիկոսի» կանոնախումբը վերջից թերի. չի ընդօրինակվել. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝* XVII *դար։ Կանոնախմբերի ցանկը չի պահվել։ Առարկայական ցանկը (անխորագիր) գտնվում է 1ա—4ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 4բ—270բ էջերում։ Կանոնագրքի տված ընթերցումներից այս ձեռագիրը զգալի շեղումներ ունի Աթանասի և Բարսեղի կանոնախմբերում։ Ձեռագիրն ընդհանուր առմամբ մոտ է* hl *ձեռագրերին։*

*44. բ. № 3544. Կանոնագիրք. թերթեր՝ 299. մեծություն՝ 19,3×14. նյութ՝ թուղթ. գիր՝ բոլորագիր. երկսյուն. վիճակ՝ կան պոկված թերթեր, դատարկ էջեր՝ 4բ—5բ, 291բ—299բ. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝* XVII *դար։ Կանոնախմբերի և առարկայական ցանկերը չեն ընդօրինակված։ Ունի այն բոլոր կանոնախմբերը, ինչ որ* m *ձեռագիրը։ Աւ և օ տառերը գործածում է խառն։*

*45. գ. № 8236. Կանոնագիրք. թերթեր՝ 156. մեծություն՝ 20,8×15,2. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. երկսյուն. վիճակ՝ վերջից կան ընկած թերթեր, դատարկ էջեր՝ 1աբ, 10բ, մի շարք էջերում կան գրչի կողմից կատարված ուղղումներ՝ 13ա, 38բ, 57ա, 70ա։ Շահապիվանի կանոնախմբում բացակայում են առանձին ընդարձակ հատվածներ, հավանաբար նախագաղափար օրինակը պակասավոր է եղել։ Ընդօրինակված է սխալաշատ։ Կանոնախմբերի ցանկը (անխորագիր) գտնվում է 2աբ էջերում, առարկայական ցանկը, դարձյալ անխորագիր՝ 2բ—8ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 8բ—156բ էջերում։ Կանոնախմբերի ցանկում նշված է 46 վերնագիր, իսկ ձեռագրում պահվել է 34-ը, 44-րդի՝ «Երանելոյն Մեսրոպայ Հայոց վարդապետի ասացեալ» կանոնախմբի վերջին ընդարձակ մասը և 45, 46-րդ կանոնախմբերը ընկած են։ Գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝* XVII *դար։*

*46. ր. № 9513. Կանոնագիրք, Դատաստանագիրք և այլ նյութեր. թերթեր՝ 500. մեծություն՝ 22×18.5. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝* XVII *դար։ Կանոնախմբերի ցանկը՝ «Շարադրութիւն կանոնաց եղեալ այսչափ և այս՞չափ գլխոցըն» վերնագրով գտնվում է 3ա—4ա էջերում, առարկայական ցանկը (անխորագիր)՝ 4ա—14ա էջերում, իսկ Կանոնագիրքը՝ 14բ—297բ էջերում։ Կանոնախմբերի ցանկում թեև նշված է 40 վերնագիր, ինչպես* itl *ձեռագրերում, սակայն այստեղ գտնում ենք 76 կանոնախմբեր, ինչպես* m *ձեռագրում։ Այստեղ թեև հանդիպում ենք բացահայտ սխալների, բայց և գտնում ենք ընտիր ընթերցումներ, որոնցից զգուշությամբ օգտվել ենք հաճախ։ Աթանասի, Սահակի կանոնախմբերի ընթերցումը շատ մոտ է* hlo *ձեռագրերին, բայց ընդհանուր առմամբ այս ձեռագիրը մոտ է* it *ձեռագրերին։*

*47. տ. № 3098. Կանոնագիրք. թերթեր՝ 346. մեծություն՝ 20,4×13,8. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. դատարկ էջեր՝ 1աբ, 345ա—346բ. գրիչ, տեղ՝ անհայտ. ժամանակ՝* XVII *դար։ Կանոնախմբերի և առարկայական ցանկերը չեն ընդօրինակված։ Ձեռագիրը պարունակում է այն կանոնախմբերը՝ թվով 78, որ նշեցինք* m *ձեռագրի համար։ Այստեղ երբեմն նկատվում են անուշադիր ընդօրինակման դեպքեր, օրինակ՝* լմպեն *փխ.* ըմպեն *(էջ*

245, տող 10), եի փխ. ե իր (էջ 255, տող 3) և այլն։ Գրիչը անհետևողական է ղ և լ տառերի գործածման մեջ։

48. Է. № 646. Կանոնագիրք. թերթեր՝ 134. մեծություն՝ 21,1×15,3. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր. միասյուն. դատարկ էջեր՝ 1ա—3բ. 123ա—133բ. գրիչ՝ Խաչկո. տեղ՝ Գալիպոլի. ժամանակ՝ 1731 թ.։ Կանոնախմբերի ցանկը «Շարադրութիւնք կանոնաց եղեալ այս չափ և այս չափ կարգ գլխոցն» վերնագրով գտնվում է 4աբ էջերում, առարկայական ցանկը (անխորագիր)՝ 4բ—12ա էջերում։ Կանոնախմբերի ցանկում նշված է 40 վերնագիր, իսկ բուն ձեռագրում ընդօրինակված է մինչև 28-րդ կանոնախումբը՝ «Կանոնք Կիւրղի Աղէքսանդրացւոյ. գլուխս Զ» խորագրով, իսկ Սահակ Պարթևի կանոնախմբից ընդօրինակված է ցանկի մի փոքր մասը՝ Ա-ԺԹ հոդվածների վերնագրերը։ Այնուհետև ընդհատված է ընդօրինակումը։ Այս ձեռագիրն ընթերցումներով մոտ է hilor ձեռագրերին։ Ձեռագրում հոդվածները չեն համարակալված։

49. № 3788. Կանոնագիրք, Դատաստանագիրք և այլ նյութեր. էջեր՝ 420. մեծություն՝ 42,5×26,5. նյութ՝ թուղթ. գիր՝ ժամանակակից. միասյուն. վիճակ՝ անցյալում ընկել է ջուրը, խոնավությունը ներծծվել է էջերում և թողել մեծ-մեծ հետքեր, որոնք շատ տեղերում խունացրել են թուղթը և անընթեռնելի դարձրել բազմաթիվ բառեր. դատարկ էջեր՝ 366—420. գրիչ՝ Պետրոս Ավետ-Սեթ. տեղ՝ Մադրաս. ժամանակ՝ 1825։ Կանոնախմբերի և առարկայական ցանկեր ձեռագիրը չունի, Կանոնագիրքը գտնվում է 1—187 էջերում։ Կանոնախմբերը չունեն նաև Հովհաննես Օձնեցու կազմած՝ հոդվածների ցանկերը։ Ձեռագրի 356—365 էջերում «Ցանկ Կանոնգրքոյս» վերնագրի ներքո տրված է ձեռագրի պարունակած նյութերի մի ընդհանուր ցանկ, որը կապ չունի սովորական կանոնագիրք-ձեռագրերի ունեցածի հետ։ Այս ձեռագիրը որոշ չափով համեմատեցինք rt ձեռագրերի հետ, նկատելով, որ սույն ձեռագիրը պարունակում է Կանոնագրքից շեղվող վերջիններիս ընթերցումները, այլև հանդիպում ենք բառերի նոր աղճատումների, որոշեցինք չշարունակել համեմատությունները և այն չօգտագործել համահավաք բնագրի կազմման համար։

50. № 4088. Կանոնագիրք. թերթեր՝ 145. մեծություն՝ 21,3×17. նյութ՝ թուղթ. գիր՝ նոտրագիր (վատ). միասյուն. դատարկ էջեր՝ 1ա—2բ, 3բ, 16ա—17բ, 140—145. գրիչ՝ Հարություն Խաչատրյան—Մարջանյանց. տեղ՝ Սևան. ժամանակ՝ 1854 թ.։ Կանոնախմբերի և առարկայական ցանկեր չունի։ Համեմատությունը ցույց տվեց, որ այս ձեռագիրը նոր բան չի ավելացնում եղածին, ուստի ընդհատեցինք համեմատությունը և չօգտագործեցինք համահավաք բնագրի կազմման համար։

51. № 659. Կանոնագիրք. թերթեր՝ 320. մեծություն 16,5×12,5. նյութ թուղթ. գիր՝ բոլորագիր. երկսյուն. վիճակ՝ երկու թերթ ընկած (տես Ս. Տիգրանյանի նշումը ձեռ.-ի 5բ էջում). գրիչ՝ Մաղաքիա դպիր[1]. վայր՝ Կաֆա.

---

[1] Սրա հայրը, Անտոն քահանան (Լ. Խաչիկյանի մոտ սխալմամբ տպված է Անուսնի. տես, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 488), 1359 թ. Կաֆայում ընդօրինակել է մի կանոնագիրք (սրա վերաարտադրած հիշատակարանը տես e ձեռագրի 325ա էջում)։ Արդյո՞ք հոր ընդօրինակած ձեռագրից կամ վերջինիս նախագաղափար հանդիսացող գրչագրից № 659 ձեռագրի գրիչ Մաղաքիան ևս օգտվել է։

